# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## № 7 ● 1985

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

# Տաղ լուսաբացի

Լու՜յս, լու՜յս ու... լո՜ւյս...
Ո՞վ էր՝ դիպավ նուրբ մատներով
Մանկանց անեղծ կոպ ու շուրթին,
Որ ծաղկեցին խանձարուրում
Ժպիտները նրանց չքնաղ...

Թփերի մեջ նույն ժամանակ
Թռչնիկները դեղնակտուց
Բացխուփ արին թևերն իրենց...
կոպի հանգույն:
Օրորոցից ցեղցեղանքն է բխում մանկանց,
Եվ թփերից՝ զվարթ դայլայլ:
Համանվա՜գ զմայլելի:

Որսա՜ պահը
Եվ ունկնդրի՜ր վերծանումի հարկ չունեցող
Տաք մեղեդին:

Նուրբ շղարշի
Յոթը շերտով սիրտդ պատիր,
Որ մինչ կեսօր,
Մինչ երեկո և մինչ գիշեր
Բույր արձակես
Եվ կարենաս
Զայնդ խառնել... լուսաբացին:

ՆԿ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ՄԵՐՈՒԺԱՆ ՎԱԼԱՆՅԱՆ

# Հայրենիք

Դու չես սկսվում սահմանագծով
Ու սահմաններով դու չես վերջանում,
Շարունակվում ես ամպերի նման
ու լեռների պես...
Քեզնից սկսվում,
շարունակվում եմ դեպի անհունը
Ու հեռուներից քեզ մոտ եմ գալիս:
Տղամարդը միշտ զինվոր է ծնվում՝
ուր էլ որ լինի.
Ամեն զինվորի մայրն ես հարազատ:

Աշխարհից աշխարհ միակ օջախն ես դու
պապենական,
Ուր ես հզոր եմ ու անպարտելի:
Աշխարհում երբեք
Քեզ փոխարինող եզերքներ չկան...

... Դու չես սկսվում սահմանագծով
Ու սահմաններով դու չես վերջանում,
Դու սկսվում ես զավակներիդ մեջ,
Շարունակվում ես քո զավակներով...



# Նամակներ ճամբարից

Ճամբարականներից մեկի հայրը եկավ տղային տեսության: Նրա հայացքի մեջ նըկատեցինք անհանգստություն: Ի՞նչն էր պատճառը: Տղան կազդուրված, ուրախ-ուրախ եկավ կանգնեց հոր առաջ.

— Տղա՛ս, ինչու՞ մի երկտող չէիր գրում քո մասին, շատ անհանգիստ էինք:

Այս միջադեպը ջոկատավարին հուշեց ջոկատում նամակագրության հատուկ ժամեր սահմանել: Այդպիսով, թե՛ նամակագրության մեջ ծույլերը և թե՛ ցանկություն ունեցողները կնստեն ու անպայման կգրեն իրենց հարազատներին, ընկերներին:

Հաջորդ օրը ջոկատավարը հայտարարեց.

— Երեխանե՛ր, գնում ենք անտառի բացատը, ձեզ հետ վերցրեք թուղթ ու գրիչ, իսկ ծրարներն ինձ մոտ են: Նամակ գրելու ժամ է հայտարարվում ջոկատում:

Բացատը հաճելի էր, տրամադրող... Նամակները գրվեցին, ծրարելու ժամանակ ջոկատավարն առաջարկեց յուրաքանչյուրին իր գրած նամակից մեկական հատված կարդալ բարձրաձայն, ինչը որ ինքը հարմար կըգտնի:

Ներկայացնում ենք այդ հատվածները:

Վ. ՔԱՄԱՆՇՈՒՋՅԱՆ
Հանքավանի «Նաիրիտ» պ/ճամբարի
ավագ մանկավարժ

Բարև, սիրելի Արմեն: Չգիտեմ ծովում ինչպես ես զգում քեզ, բայց ես «Նաիրիտում» զգում եմ, ինչպես ձուկը ծովում: Դիտեցինք արևածագը և լուսնի դուրս գալը անտառի փեշից: Ընդունեցինք հարավսլավացիներին, սփյուռքահայ երեխաներին: Ամեն երեկո ատրակցիոն խաղեր են լինում:

Կավճանկարչության մրցույթում առաջնություն շահեցի և մի հուշանվեր ստացա: Կբերեմ՝ կտեսնես:

Քո ՍԱՄՎԵԼ



Բարև՛, սիրելի՛ Անահիտ: Արդեն երկու ամիս և տասը օր է հանգստանում եմ այս ճամբարում և կարող եմ ասել, որ «Նաիրիտ» պիոներական ճամբարի առօրյան ինձ շատ է դուր եկել: Եթե դու ինքդ լինեիր այս ճամբարում, շատ մեծ տպավորություն կըթողներ քեզ վրա Հանքավանի հիասքանչ բնությունը: Երկրորդ հերթափոխում Հարավ-

ւլավիայի Տիտոգրադ քաղաքից պիոներներ էին եկել: Ինձ շատ դուր եկավ այն պահը, երբ, ի պատիվ մեր նոր ընկերների, վառեցինք բարեկամության խարույկը: Շատ հաճելի էր, երբ հարավսլավացի պիոներները մեզ պատմեցին այն մասին, որ Հայաստանի և Հարավսլավիայի բնությունը, մեր ժողովուրդների սովորույթները յուրահատուկ կերպով նման են իրար: Մեր ընկերները մեզ սովորեցրին իրենց երգերը: Իհարկե, մենք էլ մեր դրուժինայի երգերը սովորեցրինք՝ «Թռչունի երգը», «Հանքավանը» և այլն:



Սիրելի՛ Անահիտ, հիմա մեզ մոտ հանգստանում են սփյուռքից եկած երեխաներ: Երբ վերադառնամ Երևան, անպայման կպատմեմ նրանց մասին:

ԲԱՐՍԵՂՅԱՆ ՆԱԻՐԱ

Գեղեցիկ է խարույկը ճամբարում, բայց երբ այն վառվում է սարի վրա ու ջահերով՝ հրաշք է: Երեկ գիշեր բարեկամության խարույկը բոցկլտաց մեր ճամբարում, և խիզախների ջոկատը սարի գագաթից իջեցրեց մեր ավանդական «շիշը»: Ես ջահակիրների մեջ էի և չվախեցա սարի գագաթից իջնել ներքև: Ընկերներիս հետ էի:

ԱՐՄԱՆ ԱԲԳԱՐՅԱՆ

Սիրելի՛ մայրիկ, ահա արդեն մեկ շաբաթ է ճամբարում եմ: Մեզ մոտ են գտնվում նաև Բեյրութի, Սիրիայի երեխաները, որոնք շատ հետաքրքիր բնավորություններ ունեն: Մի փոքր աղմկոտ են, բայց շատ սրտամոտ, բարեկիրթ: Հետաքրքիր է նրանց հետ: Ճիշտ է, դեռ մոտիկից չեմ ծանոթացել, բայց մի տեսակ ձգտում եմ մոտենալ, մտերմանալ...

Ինչո՞ւ է ինձ այդպես ձգում...

Գուցե այն, որ նույն արյունն է մեր և ակներում, նույն մայրենին՝ լեզուներիս վրա:

ՌՈՒԶԱՆՆԱ ՂԱՐԻԲՅԱՆ

Սիրելի՛ հայրիկ, չնայած շատ դժվար էր, բայց ես այսօր ելույթ ունեցա մեր «Կանաչ թատրոնի» բեմից: Ինձ լսում էին մոտավորապես 450 պիոներ, ջոկատավարներ: Եվ... կարողացա լավ պարել, շատ ծափահարեցին ինձ: Ինքս էլ չհավատացի, որ կարող էի այդպիսի դահլիճում պարել:

ԱՐՄԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ

Սիրելի՛ քույրիկ, այսօր մեր ճամբարում, այսպես ասած, ընդունելության օր էր: Յուրաքանչյուր ջոկատ իր մոտ էր հրավիրել սփյուռքահայ մեր ընկերներին: Ամեն կողմից լսվում էին երաժշտություն, հաճելի զրույցներ, բանավեճեր, հարց ու պատասխաններ:

Մենք նրանց հյուրասիրեցինք թարմ մրգերով և նվիրեցինք փոքրիկ հուշանվերներ:

ԱՇՈՏ ԳԵՎՈՐԳՅԱՆ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մայրի՛կ ջան: Հաճույքով սկսել եմ ուտել ճամբարի ճաշերը: Հիշու՞մ ես, տանը ասում էի՝ այս չեմ ուզում, այն չեմ ուտում: Իսկ այստեղ այդպես չէ: Ինչ տալիս են ճաշարանում, այն էլ ուտելու ես: Այնպես որ դու արդեն դժվարություն չես ունենա ինձ կերակրելիս:

ԱԻԴԱ ԱՄԱԼՅԱՆ

Սիրելի՛ մայրիկ, արդեն մեկ ամիս է, ինչ

բաժանվել եմ քեզանից. շատ եմ կարոտել, բայց չնեղանաս, մա՛մ ջան, եթե ասեմ, թե արձակուրդը չորս ամիս էլ լիներ, ես այստեղ շատ սիրով կմնայի, այս գեղեցիկ ու հրապուրիչ բնության մեջ գտնվող մեր «Նաիրիտում»:

ՌԱՖԻԿ ՍԱՐԳՍՅԱՆ

Բարև, սիրելի՛ տատիկներ, ուրախացե՛ք, որ ձեր Լիլիթը արդեն սովորել է կարագ ուտել: Դե, եթե բոլորն ուտում են, ես ինչու՞ չուտեմ: Իսկ ննջարանում քնում եմ 10 աղջկա հետ: Ինչ հետաքրքի՛ր է: Թե չէ՝ տան նման՝ ննջարանում մենա՞կ, չգիտես քնելուց առաջ ու՞մ հետ բաժանես օրվա տպավորությունները:

Ձեր ԼԻԼԻԹ

Բարև', սիրելի՛ մայրիկ: Ընդունի՛ր իմ ջերմ բարևները ճամբարից, որտեղ ինձ լավ եմ զգում ու տխրում եմ, հիշելով, որ հաշված օրեր են մնում ու պիտի մենակ թողնենք մեր սիրելի ճամբարը, թողնենք նորից հանդիպելու հույսով: Մայրի՛կ ջան, մինչև հիմա եթե վստահ չէի իմ ուժերի վրա, ապա այժմ դրուժինայի խորհրդի նախագահ եմ և ուրախ եմ, որ գոնե մի փոքր օգուտ եմ տալիս ճամբարի հետաքրքիր, բայց և բարդ աշխատանքներին: Ների՛ր, որ երկար չեմ գրում, որովհետև գործերն ինձ են սպասում, իսկ լավը կատարելու համար ուզում եմ օգտագործած լինել անգամ այս րոպեները:

ԱՐՈՒՍՅԱԿ ՂԱՐԻԲՅԱՆ

Սիրելի' քույրիկ:

Արդեն սովորել եմ առավոտյան վաղ արթնանալ և ցերեկային ժամերին քնել: Ջոկատավարն՝ ընկ. Արամը, ինձ շատ է սիրում: Մազերս էլ արդեն երկարել են, էլ չեմ ամաչում առանց գլխարկի մեն գալուց:

Երկու շաբաթ, և ես տանը կլինեմ, բայց ինչպե՞ս եմ հեռանալու իմ «Նաիրիտից» և իմ ընկերներից՝ չեմ պատկերացնում:

Քո քույրիկ ԼԻԱՆՆԱ

Սիրելի' հայրիկ:

Ճամբարում ամեն ինչ լավ է, բայց ես շատ սիրեցի ճանճղեղի դաշտում աշխատելը: Լույսը բացվում է թե չէ, աչքս ընկնում է Մարմարիկի այն ափին գտնվող մեր ճամբարի հողամասին: Հողը մի տեսակ կարծես կանչում է: Մեր ճամբարի պետ ընկ. Նալբանդյանը ինձ ասում է. «Ով սիրում է հողը, նա ազնիվ մարդ է»:

ԱՐԹՈՒՐ ՊՈՂՈՍՅԱՆ

Բարև՛, սիրելի՛ մայրիկ: Նախքան իմ նամակն սկսելը, ես պետք է շնորհակալ լինեմ քեզնից, որ ձեռք բերեցիր «Նաիրիտ» պիոներական ճամբարի ուղեգիր: Արդեն տասը օր է, որ ես գտնվում եմ ճամբարում: Այստեղ շատ գեղեցիկ է: Ես շուտ ընկերացա իմ ջոկատի տղաների հետ:

Մի քանի օր առաջ ճամբար եկան մեր սփյուռքահայ բարեկամները: Նրանք մեզ պատմում էին իրենց երկրներում տեղի ունեցող իրադարձությունների մասին: Ինձ շատ է դուր գալիս մեր ճամբարը և ես շատ կուզենայի, որ լիներ չորրորդ հերթափոխը: Համբույրով կմնայի:

Մայրի՛կ, դու հիշու՞մ ես, որ երբեք երգեի: Ոչ: Ես սովորել եմ 13 երգ ու սիրով երգում եմ բոլորի հետ: Իսկ երբ նվագակցում է ընկեր Ժիրայրը, ապա փորձիր չերգել: Ճիշտ է, մի քիչ ձայնս այն չէ, բայց ընկեր Ժիրայրն ասում է՝ կարևորը ձայնը չէ, կարևորը երգը սիրելն է: Ու ես հիմա շատ եմ սիրում երգել:

Ձեր որդի ԱՐՄԵՆ

Բարև, սիրելի՛ քույր Գայանե:

Ես ուրախ եմ, որ եկել եմ «Նաիրիտ» պիոներական ճամբարը և հանգստանում եմ այստեղ: Երբ հրաժեշտ տվեցի քեզ, լաց էի լինում, որ չգամ ճամբար, ես ոչ մի անգամ չէի եղել ճամբարում, չգիտեի՝ ինչպես պետք է վարվել: Ինքս ինձ ասում էի՝ ինչպե՞ս անեմ, որ բոլորը ինձանից գոհ մնան:

Ես այսպես չէի պատկերացնում ճամբարը, կարծում էի, թե պետք է վրաններում քնենք, բայց, ո՛չ, այդպես չէ: Ես շա՜տ-շատ գոհ եմ «Նաիրիտ» ճամբարից, ընկերներիցս, ջոկատավարներից: Այստեղ շատ երգեր ու պարեր սովորեցի: Գայանե՛ ջան, ես շատ բաներ ունեմ գրելու, բայց երբ գամ տուն, ամեն ինչ ավելի մանրամասն կպատմեմ: Ցանկանում եմ, որ դու էլ մյուս տարի հանգստանաս մեր ճամբարում և զգաս այստեղի ջերմությունը:

ՄԱՐԻՆԵ ՕՀԱՆՅԱՆ

Եվս 12 օր, և վերջ իմ ճամբարային կյանքին: Շատ եմ տխրում, որ մեծացել եմ ու մյուս տարի «Նաիրիտ» չեմ գալու: Ուզում եմ ամեն ինչ նորից ու նորից սկսել, վայելել թե' բնությունը, թե՛ մաքուր օդը, սառնորակ ջրերը, թե՛ իմ սիրելի «Նաիրիտի» անցուդարձը:

Մամա՛ ջան, ինկապես շատ դժվար է բաժանվել «Նաիրիտից»:

ՄՅԱՍՆԻԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Ձեր հերթն էլ հասավ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Ձեր հերթն էլ հասավ, տասներորդցինե՛ր, դուք էլ հրաժեշտ տվեցիք դըպրոցին: Ո՛չ, սա դատավճիռ չէ, ու դուք էլ դատապարտյալներ չեք, թեև... թեև երբ ես էի դպրոցն ավարտում ու երբ այս խոսքերն ինձ էլ ասացին, թվաց, թե դատապարտյալ եմ և լսածս դատավճիռ է: Հետո ես հասկացա. այդ խոսքերը նշանակում էին, որ ժամանակն է կյանքին ու աշխարհին նայել սեփական աչքերով, քայլել ինքնուրույն, հենվել ինքդ քեզ վրա:

Հիմա դուք նույնպես չեք հավատում, որ սեպտեմբերի մեկին այլևս դպրոց չեք գնալու, իրար չեք տեսնելու: Եվ ոչ ոք չգիտի, թե ձեզանից ով ուր կհասնի ու երբ իրար կհանդիպեք հաջորդ անգամ: Եվ որպեսզի հանդիպումն անպայման կայանա, հրաժեշտի երեկոյի ժամանակ պայմանավորվեցի՞ք հաջորդ տարվա նույն օրը հավաքվել նույն տեղում, նույն ժամին: Կգա այդ օրը: Պայմանավորված ժամին կգաք, կսպասեք, կսպասեք, որ բոլորը հավաքվեն: Սակայն բոլորը չեն լինի: Ներկա կլինի դասարանի միայն մի մասը: Հաջորդ տարի հանդիպման կգան ավելի քչերը: Տարեցտարի կնվազի հանդիպման օրը հիշողների թիվը, և մի տարի էլ ձեր դասարանն այլևս չի լինի, կըդառնա հուշ, և դուք կտխրեք, ինչպես հիմա ես եմ տխուր-տրտում գրում վերջին զանգի և իմ դպրոցի մասին այս տողերս: Բայց դուք դեռ մի՛ տխրեք, թեև ես տխուր բաներ եմ ասում: Դուք դեռ հնարավորություն ունեք խուսափել տխուր վախճանից: Եթե կարող եք, մի՛ թույլ տվեք, որ վերջին զանգի մասին ձեր մտքով անցնի՝ զանգ էր, էլի՜... Ձեզանից ով էլ հանկարծ վերջին զանգի մասին այդպես անսիրտ արտահայտվի, իմացեք, որ հաջորդ տարվա հանդիպման չներկայացողներից մեկն էլ նա է լինելու:

Վերջին զանգը երաժշտություն է, մանկության ու պատանեկության վերջին ղողանջը: Եվ թույլ մի՛ տվեք, որ որևէ մեկը նման անսիրտ խոսքերով (զանգ էր, էլի...) դավաճանի իր մանկության և պատանեկության վերջերգին: Դա դավաճանություն է ինքդ քո նկատմամբ, քո համադասարանցիների և ընդհանրապես ընկերության նկատմամբ: Հիշե՛ք, որ ամեն տարի ձեզ սպասելու են ձեր ընկերները:

Դպրոցի ուսուցչանոցում կամ ինչ-որ մի ուրիշ տեղ գտնվում է զանգի կոճակը: Ձեզանից շատերն այն երևի այդպես էլ չտեսան: Երևի ճիշտն այն է, որ ոչ մի դպրոցական երբեք էլ չիմանա, թե որտեղ, ինչ ձևով է ծնվում զանգը: Ամեն մեկդ գիտեք, որ դպրոցական զանգը միայն էլեկտրական կոճակ սեղմել չէ: Ես մեր դասարանի վերջին զանգի օրը միայն իմացա, որ դպրոցական զանգը ծնվում է մատով էլեկտրական կոճակին հպվելիս: Բայց միևնույն է, դա չխանգարեց, որ ինձ միշտ էլ թվար, թե այն եկել է մանկության խորքերից, տարբեր բակերից մեզ կանչել-բերել է մի դասարան, որպեսզի մենք բարեկամանանք, ընկերություն անենք: Այն իրոք գալիս է մանկության ու պատանեկության խորքերից, որտեղ թողել ենք հոկտեմբերիկի մեր աստղը, պիոներական փողկապը, այբբենարանը, մեր առաջին ուսուցչուհուն, մեր «երկուսները», «երեքները», «չորսերը», «հինգերը»...

Վերջին զանգի օրը տասներորդցիներիս այնքան ջերմությամբ էին շրջապատել դպրոցում, որ մենք շփոթվել էինք: Չգիտեինք, որ մեզ այդքան շատ էին սիրում դպրոցում: Թե ձեզ ինչքան շատ էին սիրում ձեր ուսուցիչներն ու մյուս՝ ցածր դասարանների աշակերտները, դպրոցի հավաքարարներն ու դռնապանը: Հիշում եմ, թե ինչքան շատ հուզվեցինք, երբ բարձրախոսով յուրաքանչյուր ավարտական չորս դասարանից վերջին զանգը տալու համար հրավիրվեց մեկ



տասներորդցի։ Մեր դասարանից ինձ էին կանչել։ Մյուս դասարաններից հիշում եմ մի տղայի։ Մենք ծանոթներ չէինք, թեև ես գիտեի նրա անունը։ Բոլորիս դեմքերին և՛ ուրախություն, և՛ տխրություն կար։

Ուրախ էինք, որ վերջին զանգը տալու պատիվը մեզ էին վերապահել։ Եվ տխուր էինք, որ դա լինելու էր վերջինը։

Ուղեկցեցին ուսուցչանոց, որի պատերից մեկի վրա, հեռավոր անկյունում մի շատ սովորական կոճակ կար։ Չորսս էլ անվստահորեն մատներս իրար հետ դրեցինք զանգի կոճակին ու սեղմեցինք։ Սկզբում ինձ թվաց, թե զանգը մի պահ ուշացավ։ Ծրջվեցի։ Նրանք էլ էին շրջվել։ Վախ կար նաև նրանց աչքերում։ «Չլինի՞ թե էլեկտրականություն չկա»,— անցավ իմ մտքով։ Բայց հենց այդ ակընթարթին մի քիչ կակազելով ու մի քիչ էլ վախվորած հնչեց զանգը, մեր վերջին զանգը, որ գնաց-գնաց ու մտավ մեր համադասարանցիների սրտերը։

Իմ երակները ջութակի լարերի պես մի քանի րոպե դողում էին։

Հետո օրերից մի օր փողոցում հանդիպեցի այն տղային։ Մոտեցա ու բարևեցի։ Նա էլ բարևեց, բայց զարմացավ, փորձեց հիշել ու... հիշեց։

Հիմա մենք լավ ընկերներ ենք։ Հաճախ ենք հանդիպում, զրուցում, հիշում դպրոցը, մեր ընկերներին, ուսուցիչներին և վերջին զանգը։ Ինչպես ասում են, իրար կես խոսքից էլ հասկանում ենք։ Մի օր, գիտե՞ք, թե նա ինձ ինչ ասաց։ Նա ասաց, որ վերջին զանգի կոճակը սեղմելիս իրեն թվացել էր, թե զանգն ուշանում է։ Եվ վախեցել էր՝ չլինի՞ թե էլեկտրականություն չկա։

Ես զարմացած էի, ափսոսում էի, որ մենք միևնույն դասարանում չէինք սովորել։ Եթե միասին եղած լինեինք, այսօր գուցե մեր դասարանը հուշ դարձած չըլիներ և վերջին զանգի մասին իմ խոսքն այսքան տխուր չգրվեր։

Որևէ դպրոցի մոտով անցնելիս, երբ լսում եմ զանգի ձայնը, երակներս ջութակի լարեր են դառնում և կարծես լսում եմ մանկության ու պատանեկության վերջին, ինձ ետ կանչող ղողանջը։ Ես քայլերս արագացնում եմ. ինձ սկսում է թվալ, թե տարիներ անց, մեր դպրոցում վերջապես հավաքվել են իմ բոլոր համադասարանցի ընկերներն ու ինձ են սպասում, իսկ ես ուշանում եմ...



# ՈՂՋՈՒՅՆ, ՓԱՌԱՏՈՆ



## Բեռլին 1973

Եվ նորից, 22 տարի անց, Բեռլինը դարձավ փառատոնային մայրաքաղաք: 1973 թվականի հուլիսի 28-ից օգոստոսի 3-ը տեղի ունեցավ երիտասարդության 10-րդ փառատոնը, որին մասնակցեց 140 երկրների 25 հազար ներկայացուցիչ: Փառատոնի նշանաբանն էր. «Հանուն հակաիմպերիալիստական համերաշխության, խաղաղության և բարեկամության»:

Բեռլինյան փառատոնի գլխավոր գիծը քաղաքական ակտիվության անօրինակ վերելքն էր:

Փառատոնի պատվիրակները մասնակցեցին Վիետնամի, Լաոսի և Կամբոջայի երիտասարդների և ուսանողների հետ համերաշխության օրվան նվիրված, Բեբելպլատցում տեղի ունեցած «Հանուն խաղաղության, միջազգային անվտանգության և համագործակցության» մասսայական միտինգին, քաղաքական երգի փառատոնին:

Առաջին անգամ փառատոնային շարժման պատմության մեջ փառատոնի ծրագրում նախատեսված էր հատուկ մանկական ծրագիր, որին մասնակցում էին մանկական կազմակերպությունների պատվիրակները: Փառատոնի օրերին գործում էր «Երեխաների բարեկամներ» ակումբը:

Է. Թելմանի անվան զբոսայգում տեղի ունեցավ տոնահանդես, որին մասնակցեց ԳԴՀ-ի և այլ երկրների ավելի քան 20 հազար երեխա:

Փառատոնի օրերին անցկացվում էր Հանոյում մանկական հոսպիտալի կառուցման համար միջոցների հավաքման կամպանիա:



## Հավանա 1978

Երիտասարդության և ուսանողների համաշխարհային 11-րդ փառատոնը տեղի ունեցավ Կուբայի մայրաքաղաքում, հուլիսի 28-ից օգոստոսի 5-ը: Մասնակցում էր 145 երկրների 18,5 հազար պատվիրակ:

Փառատոնը ոչ միայն տոն է, այլև պայքար: Այստեղ առաջին անգամ բացվեց «Երիտասարդությունը մերկացնում է իմպերիալիզմը» միջազգային տրիբունալը: Տրիբունալի նիստերի ժամանակ լսվում էին վկաների ցուցմունքներ, որոնք մերկացնում էին ցեղասպանությունը, ռասիզմը, ֆաշիզմը, միլիտարիզմը...

Փառատոնի պատվիրակները մասնակցում էին համերաշխության միտինգներին, կոնֆերանսներին, հանդիպումներ ունենում Հավանայի բնակիչների, աշխատավորների և զինվորների հետ:

Այստեղ էլ, ինչպես Բեռլինում, կազմված էր հատուկ մանկական ծրագիր, որի կենտրոնը Խոսե Մարտիի անվան պիոներական ճամբարն էր: Փառատոնին մասնակցում էր 61 մանկական կազմակերպություն, այդ թվում և սովետական պիոներների պատվիրակությունը:

Փառատոնն ավարտվեց հսկայական շքերթ-ցույցով, որը տեղի ունեցավ Հավանայի գլխավոր Հեղափոխության հրապարակում: Այստեղ ընդունվեց «Կոչ աշխարհի երիտասարդությանը»:



## Մոսկվա 1985

1983 թ. համամիութենական լենինյան կոմերիտմիությունը հանդես եկավ երիտասարդության և ուսանողների 12-րդ փառատոնը Մոսկվայում անցկացնելու

նախաձեռնությամբ: Եվ ահա այսօր այդ նախաձեռնությունը կենսագործվում է:

Մոսկվայի փառատոնի նշանաբանն է. «Հանուն հակաիմպերիալիստական համերաշխության, խաղաղության ու բարեկամության»:

Փառատոնը մի շարք առանձնահատկություններով տարբերվում է նախորդներից: Նախ՝ իմպերիալիստական երկրների ռազմատենչ քաղաքականության պատճառով չափազանց սրվել է միջազգային դրությունը և փառատոնի անցկացման պայմաններն արտակարգ բարդացել են: Մյուս կարևոր առանձնահատկությունն էլ այն է, որ փառատոնը տեղի է ունենում այնպիսի ժամանակ, երբ աշխարհի առաջադեմ մարդկությունը նշում է գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախման 40-ամյակը: Խորհրդանշական է, որ 12-րդ փառատոնն անց է կացվում Մոսկվայում, այն երկրի մայրաքաղաքում, որն իր ուսերին կրեց ֆաշիզմի ջախջախման դժվարությունների մեծագույն մասը: Հենց այս քաղաքի պարիսպների տակ ցնդեց հիտլերյան Գերմանիայի անպարտելիության միֆը:

Աշխարհի ապագան պատկանում է երիտասարդներին, պատանիներին ու մանուկներին, և նրանք Մոսկվայից այդ մասին մեկ անգամ ևս հիշեցնում են բոլոր նրանց, ովքեր անտարբեր են մեր գեղեցիկ մոլորակի ճակատագրի նկատմամբ:




## «Քվեարկում եմ խաղաղության օգտին»

«Յունի խուդոժնիկ» համամիութենական ամսագրի «Քվեարկում եմ խաղաղության օգտին» մրցույթին ներկայացված էին հայ երեխաների մոտ ութ տասնյակ աշխատանքներ: Այդ աշխատանքների հեղինակներն իրենց յուրահատուկ ու ջրաներկ նկարներով, ընդրբակերտ ժանյակներով ու ասեղնագործություններով, իրենց հոգու պարզությամբ ու անմիջականությամբ քվեարկում են խաղաղության օգտին:

Ալեքսան Տոկատլյանի (12 տարեկան) «Իմ տատիկը» կտավը յուղանկարչական ինքնատիպ մի աշխատանք է: Պատանի նկարիչը գեղագիտական դաստիարակության փորձարարական ստուդիայի սան է: Նրա այս աշխատանքը ցուցադրվել է տարբեր առիթներով և բարձր գնահատվել մասնագետների կողմից:

Քնարական ու տիպիկ ազգային ոճի աշխատանք է Գևորգ Մաթևոսյանի «Հին Երև-

վանը» կտավը: Տասնմեկամյա պատանին չի տեսել հին Երևանի շենքերը, սալապատ նեղ փողոցները, արհեստավորական հին կրպակները, քաղաքի առօրյայի մասին պատմող հնատոճ ազդագրերը, սակայն այս ամենն այնքան բնորոշ է արտացոլված կտավում, այնքան անկեղծ ու առանց ավելորդությունների, որ թվում է, թե աշխատանքի հեղինակը ականատես է եղել հին Երևանի կենցաղին: Աշխատանքի ստեղծման համար հիմք են ծառայել մեծերից լսած պատմությունները, նկարչական խմբակում ստացած գիտելիքները, ազգային ավանդույթների որոշակի իմացությունը: Կտավը լի է վառ երևակայությամբ և ջերմ տրամադրությամբ:

Հարություն Աբգարյանի (12 տարեկան) «Հայկական բնանկարը» գրաֆիկական հետաքրքիր աշխատանք է: Պատանի նկարչի հնարավորությունները ավելի շատ դրսևորված են այս ժանրում: Հարությունին հաջողվել է պատկերել Հայաստանի լեռների վեհությունը, հայրենի բնաշխարհի առնական ու վեհ կերպարը:

Առանձին հետաքրքրություն են ներկայացնում դեկորատիվ-կիրառական արվեստի գործերը: Համամիութենական մրցույթին ասեղնագործ աշխատանքների ու ժանյակների ներկայությունը պատահական չէ: Հայկական ժողովրդական արվեստում դրանք դարերի պատմություն ունեն: Մրցույթին ներկայացված ասեղնագործություններից դրվատանքի արժանացան Կարինե Ղազարյանի և Ելենա Գաբրիելյանի աշխատանքները: Հին հայկական ասեղնագործության զարգացման բարձր աստիճանի մասին են վկայում մատենագրական տվյալները, որ մեզ են հասել Ագաթանգեղոսից ու Մովսես Խորենացուց: Ասեղնագործության ավանդույթները սրբությամբ են պահպանվել ու ժառանգվել սերունդների կողմից: Եվ պատահական չէ, որ գեղագիտական դաստիարակության կենտրոնի ղեկավարությունը ստեղծել է նաև ասեղնագործության բաժին: Այդ ցուցահանդեսում դրվատանքի արժանացան նաև ասեղնագործ 2 ժանյակներ (հեղինակներ՝ Ռուզաննա Մնացականյան, Աղավնի Մելիքյան): Սպիտակաթել ասեղնագործ ժանյակը խորհրդանշում է արև, լույս ու ջերմություն, մյուս ժանյակն իր մեջ ասես խտացնում է Հայաստան աշխարհի գույները, կապուտակ Սևանը:

«Յունի խուդոժնիկի» նախաձեռնությամբ անցկացվող մրցույթը բացահայտեց շատ շնորհալիների, եղավ խաղաղության ու բարեկամության իսկական տոն:

ԲԱԲԿԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

# Արյուն լիճ

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

Լճի մասին, որի մեջ սպիտակ նժույգ էին տեսել, շատ էին խոսում, լիճը մառախուղի պես ծածկված էր խորհրդավորությամբ, զարմանալի բաներ էին ասում, իբր անտակ խորն է, չնայած փոքրությանը՝ փոթորկոտ օրերին ալեկոծվում է ծովի նման, և այնպես է պղտորվում ջուրը, որ դառնում է արյան պես կարմիր: Ասում էին երկաթահանք կա հատակին, մեկն ասում էր, որ զենք է, մի ժանգոտ սուր էր ցույց տալիս, որ գտել էր ափին, ալեբախությունից հետո: Ուրիշ իրեր էլ էին գտել, շատ էին խոսում ոսկե ապարանջանների, մատանիների, զմրուխտե աչքերով վզնոցների մասին:

Իսախանենց Ջավադի աղջիկը մի օր դպրոցում երևացել էր այդ զմրուխտե աչքերով վզնոցը վզին, դպրոցական հասակի աղջիկ էր, շատերն էին տեսել, հետո ուրացան, ասացին այդպիսի բան չի եղել, երեխան հիմարություն է արել:

Լիճը սարերում էր, այնտեղ, ուր ամռանը արոտավայրեր էին ելնում, մնում մինչև սեպտեմբերի սկզբները, ձյան հետ իջնում: Այնքան բարձր էր, սեպտեմբերին այնտեղ ձյուն էր դնում մինչև մայիսի, հունիսի կեսերը:

Շատ բարձր էր:

Բայց առասպելը գեղեցիկ էր, հորինվել էր երևի դարերի խորքերում, պատմելով մնում էր, հավատացողները շատ էին. տեղի բնակիչները մի ամբողջ բանակ՝ ղոշուն էին ջարդել, բոլորին, զենքերով, ձիերով, ասպազենով լցրել լճի մեջ, մեկին անգամ չէին թողել, որ ճանապարհը չհիշվի: Թե ինչ ազգ էին եղել եկվորները, ինչ բանակ էր, ում բանակն էր, չէր հիշատակվում, լեռնականն այստեղ ռազմաշունչ էր, այսպիսի հակառակ առասպելներ միայն այս կողմերում կարող էին հորինել, մեր լսածը մշտապես ընկճող է եղել, մեզ



են խոցել, մեր արյունն էր փոթորկոտ օրերին ելնում լճերի երեսը, մերոնք էին խորքերում՝ ձիերով, զենքերով, ասպազեն:

Հովիվները լճափից եղեգ էին կտրում, շվի էին շինում, տեսնողն իսկույն կասեր, որ շվին այնտեղից է, լսելով էլ կասեր, այդ շվիները ձեռքից գետին ընկնելիս զնգում էին, ասես մեջը երկաթ կար, երկաթից էր:

Ո՞ր մեկ խորհրդավոր լճում նժույգ չկա: Բայց այստեղ մեկը չէր, շատ էին, փոթորիկի ժամանակ խրխնջում էին, վրնջում էին հարյուրավոր, հազարավոր նժույգներ, նրանց սմբակների դոփյունից էր հատակի կարմիր տիղմը ելնում վեր: Բաշերն էլ երբեմն երևում էին ջրի երեսին: Եվ պատմում էին նմանապես, որ այդ սըրընգի նվագով նրանց կարելի է դուրս կանչել: Տեսնողները բազմաթիվ էին, իհարկե, շատ անհավատալի էր, բայց մարդիկ տեսել էին, դեմդ կանգնած պատմում էին առանց սարսուռի, մի քիչ մտահոգ, սակայն ականատեսի ստույգությամբ: Այդտեղից անասուններն անգամ ջուր չէին առնում, շատ դառն էր, օրերով դառնությունը չէր անցնում:

Ավելի արժանահավատության համար հիշատակում էին, որ երկրաբաններ են եկել, հետախուզել են, մեր օրերի ամեն ինչը ստուգաբանելու, հեքիաթը միկրոսկոպի տակ դիտելու, ամեն ինչը ճշտելու,

առասպելի համար տեղ չթողնելու սովորությով՝ այդ լիճն էլ դարձնում էին գիտական ուսումնասիրության առարկա և անում համապատասխան եզրակացություն. լճի ջրերում տարրեր կան, որ Մենդելեևի աղյուսակում չկան, մնում է եզրակացնել, որ լիճը տիեզերական ծագում ունի, խորքում ընկած է անհայտ բաղադրության մի երկնաքար: Այսպիսով, ամեն դար իր մասն է դնում առասպելի մեջ, հեքիաթը ոչնչացնելով՝ ավելի հեքիաթ դարձնում:

Բայց բուն գեղջկական միջուկը բանաստեղծական էր, հավատի ու հավատալու հետ էր կապվում, հավատալով կարող ես տեսնել և՛ նժույգը, և՛ զենքը, և՛ աչքերի դեմ լիճը կկարմրի արյան գույնի: Եվ այդ գեղջկական միջուկն անպաճույճ է, ինչպես իր խրճիթը, սեղանի հացը, ոտքի տրեխները:

Բոլոր լավ հեքիաթների պես սա էլ շատ հին էր, գերեզմանոցում քարեր կային, քարերի վրա՝ անուններ, տանում ցույց էին տալիս՝ այս մարդն ու այն մարդը եղել են այնտեղ այն օրերին, երբ Ենգոն սպիտակ ձիու վրա մտել է գյուղ, իսկ Ենգոն՝ վաղուց տնից գնացած, անհետացած՝ գնդել-մնացել էր սարերում, նրա մասին երեխա ժամանակ են լսել, բայց հարյուր տարի անց Ենգոն հայտնվել էր սպիտակ ձիու վրա, այստեղ բոլորն իրենց քարերն ունեին, մենակ նա չուներ: Ենգոն եկել, երևացել, անցել է գյուղամիջով, ձիու պոչն, ասում էին, այնքան երկար, այնքան սպիտակ, այնքան մեծ էր, որ մի մեծ ամպ էր ասես ձիավորը և մեկ ուրիշ ամպ ետևից էր գնում:

Ենգոն հրեղեն ձիով մտնում է գյուղ, բայց գյուղը չի ճանաչում, անցնում է թաղից թաղ, իրենց տունն է ման գալիս, բայց այլևս չկային ո՛չ տունը, ո՛չ այգին, ո՛չ կինը, ո՛չ երեխան, ժողովուրդը փոխվել էր, ուրիշ մարդիկ էին ապրում, հասկանում է, որ դարեր են անցել, ինքն այստեղ անելիք չունի, սիրտը մենությունից քիչ է մնում պայթի, հիշում է ջահելությունը, կին, երեխա, ծնողներ, միայն մեկ անգամ տեսավ ջրի ձիուն ու ցնորվեց, քունը կորցրեց, ասաց՝ մինչև իմս չլինի, տուն չեմ գալու, սարերից չեմ իջնելու, գնաց, կորավ, ձմեռն էլ չիջավ, ասացին՝ Ենգոյին գելերը կերել են, խելառ-խելառ ով գիտի որ կիրճն է ընկել:

Ամռանը նոր սար ելածները փնտրում են, հալվող ձյան տակ ոսկորներ են գտնում, մարդու ոսկորներ: Ուրիշ ով պիտի լիներ, բայց ո՞ւր տարի է մեռել, անցյա՞լ տարի, թե՞ հարյուր տարի առաջ, դժվար է ջոկել: Ստացվում է, որ ինքը մեռել էր, բայց նրա երազանքը մնացել էր երկրի վրա և երազանքը կատարվել էր. Ենգոն ինքը երևույթացել էր սպիտակ նժույգի վրա, ինքը կամ իր երազանքը:

Ուրեմն, լինում է, որ դարեր պիտի սպասես, որպեսզի երազանքդ կատարվի, մահից հետո էլ պիտի սպասես, Ենգոն այդքան համբերություն է ունեցել: Եվ ասում էին, որ գնալիս քսան-քսանմեկ տարեկան էր Ենգոն, հիմա ձիու վրա նա խոր ծեր էր, միրուքը սպիտակ, ձիու սպիտակ բաշին խառնված, երազելով էր ծերացել, հիմա էլ գնում էր այս աշխարհից՝ երկրի վրա թողնելով իր կատարված բաղձանքը:

Այժմ էլ, իբր, ով տեսնի այդ ձին, նրա երազանքը կկատարվի: Մեծերը փոքրերին ասում էին՝ դատարկ բան է, ինչ եք խոսում, կայծա՞կ, ի՞նչ կայծակ, ջրի մեջ կայծա՞կ, երկնքի ամպը լճի մեջ երևում է, ասում են ձի է, ի՞նչ ձի: Բայց ամեն նոր ծնվածի հետ այս ամենը պատմվում է նորից:

Մի սայլապան ու կթվորներից մի կին, անունները չեն տալիս, սարից իջնելիս սայլը բարձած կաթով լիքը բիդոններ, ձիերը հանկարծ ծառս են լինում, արշավում են առանց մտրակ, սայլապանը ինչ անում-չի անում, կանգնեցնել՝ անհնար, թռչում, ձորն են թափվում, բիդոնները գլորվում են այնքան հեռու, որ տեսնողը զարմանում է, թե որտեղից որտեղ են հասել:

Ձիերն ինչու՞ կատաղեցին, թևեր առան, ի՞նչ էր պատահել: Կինը մահացել էր, սայլապանը ողջ էր մնացել, շունչը դեռ վրեն, ասաց՝ այդ անիծված ջրի մոտով անցնում էինք, այնպիսի մառախուղ, այնպիսի մառախուղ, ես ի՞նչ իմանամ գտնվի ենք, թե երկնքի մեջ: Մեկ էլ առաջիս տեսա այդ անտեր ձին, Ենգոյի ձին: Այս էր ու այս, ձիերս թռան, թևեր առած թռան, սայլը սայլ չէր, թռչկան էր դարձել, իսկ առջևից սլանում էր այն ճերմակը, էլ ուրիշ բան չեմ հիշում...

Հանգուցյալների հիշատակը հարգելով՝ ուրիշ բան չասացին, միայն այն, որ ջահել տարիներին իրար սիրած են եղել, բայց միմյանց չեն արժանացել... ու հանկարծ տեսել են Ենգոյի ձին. երազանքը կատարվելու էր... ով տեսնի Ենգոյի ձին՝ նրա երազանքը կատարվում է այդ գնով:

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# Արև հորինողը

Արևը թառել իմ ուսին,
Երգում է կամաց ականջիս,
Բոլորը նայում են ուշիմ
Եվ կարկամում նախանձից:

Մեկը ասում է՝ ծախիր ի՛նձ,
Մեկը ասում է՝ նվիրի՛ր,
Մեկն էլ ուզում է գողեգող
Բռնել արևի թևերից:

Բոլորը հետո միասին
Երկինք են նայում զարմացած,
Մի արև էլ վերևում է շողում,
Իջել է մյուսն ահա ցած:

— Այս տղան գուցե
Եկել է գրքից հեքիաթի,
Հեքիաթի արևը բերել,
Տանում է մայթով քաղաքի:

Եվ ո՛չ ոք, ո՛չ ոք չգիտե,
Որ ես եմ արև հորինում՝
Երգող արևներ մեր տան մեջ,
Արևներ պայծառ ու սիրուն:

Եվ եթե հանկարծ դուք տեսնեք
Արեգակների մի երամ,
Իմացե՛ք, որ ես բացել եմ
Պատուհանները ողջ մեր տան:

# Դաշտում

Գարնան դաշտում մի ծաղիկ
Սիրտը բացեց ցողերին
Եվ դեռ ոչինչ չլսած՝
Ցողերը լուռ ցնդեցին:

Եվ ծաղիկը քիչ հետո
Գաղտնիքն ասաց մեղվիկին:
Մեղվիկն առավ նեկտարը,
Թողեց գաղտնիքը ծաղկին:

Հեզ ծաղիկը չտխրեց,
Սիրտը բացեց թռչունին:
Անմիտ թռչունը երգեց.
— Քո հավեսը ես չունեմ:

Եվ ծաղիկը մոլորվեց.
— Բա ու՞մ պատմեմ գաղտնիքն իմ:-
Ամպը ծպտաց. «Սպասի՛ր,
Հիմա կգա գիժ քամին»:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

**ՍՈՒՐԵՆ ԽՈՒԴՈՅԱՆ**

# ՆԵՐՍԻՍՅԱՆ ԴՊՐՈՑ

Ներսիսյան դպրոցը հիմնվել է 1824 թվականին, Թիֆլիսում, Վրաստանի հայոց հոգևոր առաջնորդ Ներսես Աշտարակեցու ջանքերով: Իր հիմնադրի անունով էլ կոչվել է Ներսիսյան:

Դպրոցին կից հիմնվել է նաև տպարան, որտեղ տպագրվել են մեծ թվով դասագրքեր և հայագիտական արժեքավոր աշխատություններ:

Մինչ այդ Կովկասի հայերը քիչ թե շատ կանոնավոր դպրոց չեն ունեցել: Այս դպրոցի նպատակն է եղել պատրաստել բանիմաց ուսուցիչներ՝ հայաբնակ այլ վայրերում հիմնըվելիք ազգային դպրոցների համար: Ներսիսյան դպրոցում դասավանդելու են հրավիրվում ժամանակի ամենակրթված մարդիկ, այդ թվում տեսչի պաշտոնով՝ Մոսկվայի Լազարյան ճեմարանի դասատու, հայ նշանավոր բանաստեղծ ու մանկավարժ Հարություն Ալամդարյանը:

Ներսիսյան դպրոցում Ալամդարյանի գործունեությունը շատ բեղմնավոր է եղել, և դպրոցի պատմության մեջ այդ շրջանը հիշվում է իբրև «դար Ալամդարյան»:

Ցավոք, դպրոցի կյանքը հարթ ու խաղաղ չի անցել: Այն հաճախ է փակվել Ներսեսի հակառակորդների խարդավանքների հետևանքով: Դպրոցի վիճակը զգալի չափով բարելավվում է 1840-ական թվականների կեսերից, երբ ինքը՝ Ներսես Աշտարակեցին, դառնում է ամենայն հայոց կաթողիկոս: Դպրոցը ղեկավարելու համար նա հրավիրում է Եվրոպայում բազմակողմանի կրթություն ըստացած և մանկավարժությանը լավատեղյակ, առաջադեմ հայացքներ ունեցող Պետրոս Շանշյանին, որը կարճ ժամանակում լուրջ բարեփոխություններ է կատարում՝ հակառակ հետադիմականների կատաղի դիմադրությանն ու հալածանքներին: Նույնպիսի դիմադրության ու հալածանքների է ենթարկվել հայ մշակույթի խոշորագույն դեմքերից Ստեփանոս Նազարյանը, որ 1858—1864 թթ. Մոսկվայում խմբագրում էր «Հյուսիսափայլ» ամսագիրը՝ Միքայել Նալբանդյանի աշխատակցությամբ: Նազարյանը 1870 թ. հրավիրվում է Ներսիսյան դպրոցի տեսուչ և իր հերթին կատարում է շատ բարեփոխություններ ուսումնական ծրագրերի մեջ, հատուկ ուշադրություն դարձնելով մայրենի լեզվի, առանձնապես աշխարհաբարի ուսուցմանը: Բայց ենթարկվելով հետադեմ ուժերի հալածանքներին ու զրպարտանքներին, 1871 թ. կեսերին նա ստիպված է լինում թողնել և հեռանալ Թիֆլիսից:

Ներսիսյան դպրոցը տարբեր տարիներ ունեցել է տարբեր կառուցվածք և սովորողների տարբեր քանակ: 1906—1907 ուստարում դպրոցը կազմված է եղել երեք նախապատրաստական բաժանմունքներից (Ա.Բ.Գ.) և յոթ հիմնական դասարաններից, այսինքն ունեցել է 10-ամյա դասընթաց: Որոշ թվով տարրական դասարաններ է ունեցել նաև քաղաքի հայաշատ թաղամասերում՝ Հավլաբարում և Սոլոլակում: Սովորողների թիվը հասել է 1701-ի, որից «մայր դպրոցում»՝ 638 հոգի: Այն ժամանակվա համար դա մեծ թիվ էր:

Տարիների ընթացքում Ներսիսյան դպրոցը փաստորեն դարձել էր համազգային ուսումնական հաստատություն: Ուսումնական գործի կազմակերպման մեջ նրան էին հետևում բազմաթիվ հայ դպրոցներ: Բացի այդ, այնտեղ սովորելու էին գալիս գրեթե բոլոր հայաբնակ վայրերից, նաև Երևանի նահանգից, Գանձակից, Բաքվից, Բաթումից, Քութայիսից, Կարսից, Հյուսիսային Կովկասից, Ռուսաստանից, Պարսկաստանից, Տաճկահայաստանից:

Կրոնական մի շարք առարկաներից բացի, դասավանդվող հիմնական առարկաներն են եղել հայոց լեզուն ու գրականությունը, Հայաստանի պատմությունն ու աշխարհագրությունը, ռուսաց լեզուն և գրականությունը, Ռուսաստանի պատմությունն ու աշխարհագրությունը, ընդհանուր պատմությունը, մանկավարժությունը, հոգեբանությունը, ինչպես նաև՝ ֆիզիկամաթեմատիկական և բնագիտական շատ առարկաներ:

Ներսիսյան դպրոցը գործել է մինչև 1924

թվականը. ուղիղ մեկ դար: Իր հարյուրամյա գոյության ընթացքում տվել է ավելի քան 2000 շրջանավարտ, որոնցից են Խաչատուր Աբովյանը, Ստեփանոս Նազարյանը, Պերճ Պռոշյանը, Ղազարոս Աղայանը, Հովհաննես Թումանյանը, Դերենիկ Դեմիրճյանը, Գևորգ Չըմըշկյանը, Արմենակ Շահբուդաղյանը, Երվանդ Լալայանը, Ավետ Ավետիսյանը, Շարա Տալյանը, Անաստաս Միկոյանը և մեր պատմության ու մշակույթի ուրիշ երևելի դեմքեր:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հիշատակենք նաև այդ պանծալի դպրոցի անվանի ուսուցիչներից Հարություն Ալամդարյանի, Պետրոս Շանշյանի, Ստեփանոս Նազարյանի, Սեդրակ Մանդինյանի, Առաքել Բահաթրյանի, Սամվել Բալաղյանի, Ղազարոս Աղայանի, Ավետիք Արասխանյանի, Մակար Եկմալյանի, Ալեքսանդր Երիցյանի, Երվանդ Լալայանի, Ստեփան Մալխասյանի, Ստեփան Լիսիցյանի, Մանուկ Աբեղյանի, Իսահակ Հարությունյանի, Փանոս Թերլեմեզյանի, Առաքել Բաբախանյանի (Լեո), Ծերենցի, Սպիրիդոն Մելիքյանի և այլոց լուսավոր անունները, որոնք իրենց տաղանդավոր աշակերտների հետ առաջ են մղել հայ հասարակական-քաղաքական ու գիտական միտքը, մեր աշխարհաբար լեզուն ու գրականությունը, մեր բազմաճյուղ մշակույթը:

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



«ԾԱՂԻԿՆԵՐ»
ԼՅՈՒԴՄԻԼԱ ՆԵՐՍԻՍՅԱՆ, 14 տ.
Արթիկի շրջան, գ. Նոր կյանք

ԱՐԹՈՒՐ ԳՐԻԳՈՐՅԱՆ, 12 տ.
Երևան

«ԽԱԹՈՒՆ ՓԻՄԻԿՆ ԻՐ ՁԱԳԵՐԻ ՀԵՏ»
ՀՈՒՓՍԻՄԵ ԱՐՈՅԱՆ, 10 տ. Լենինական

«ՄԵՐ ՇԵՆՔԸ»
ՍԱՄՎԵԼ ԴԱՎԹՅԱՆ, 11 տ. Լենինական



Սերո Խանզադյան

Նկ. ՖԵԼԻՔՍ ԳՅՈՒԼԱՆՅԱՆԻ

## Ո՞րն է աջը, ո՞րն է ձախը

Տատիկս տրտնջում է, շատ կամաց քաշում ականջս.

— Ա՜յ Մուկուչիկ, ախր արդեն չորս տարեկան ես դառնում, սովորի՛ր, թե որն է աջ ձեռքդ, որը՝ ձախդ։

Բռնում է մի ձեռքս։

— Ա՛յ, սա աջն է։ Ասա՝ աջ։

— Ա՛ջ,— ասում եմ բարձր։

Բռնում է մյուս ձեռքս.

— Սա էլ ձախն է: Ասա՝ ձախ:
— Ձա՛խ,— ավելի բարձր կրկնում եմ ես:— Սա՝ աջ, սա՝ ձախ:
Տատիկս համբուրում է իմ ճակատը:
— Ա՛յ, այդպես: Ա՛յ, այդպես:
Բայց մի քիչ հետո ես մոռանում եմ, թե որն էր աջ ձեռքս, որը՝ ձախը: Մոռանում եմ ու պոռշ անում. լացս գալիս է:
— Տատի՜կ...
— Ջանի՜,— հասկանալով ցավս, տատիկը թողնում է կարտոֆիլ կճպելը:— Ախըր մի՛ մոռանա, մի՛ շփոթի: Այս մեկը աջն է, այս մեկն էլ՝ ձախը:
Նա կրկնում է մի հինգ անգամ: Բայց ես նորից չեմ կարողանում տարբերել, թե որն է աջը, որը՝ ձախը: Եվ որպեսզի այլևս տատիկս չչարչարվի, ձեռքերս թաքցընում եմ բաճկոնիս տակ:
Մի օր էլ տատիկս ինձ նստեցրեց իր ծնկներին ու կապույտ թանաքով մի ձեռքիս աղվես նկարեց, ասաց՝ հիշիր, սա աջն է, մյուսին էլ ձի նկարեց, ասաց՝ սա էլ ձախն է:
— Կրկնի՛ր:
Ես կրկնեցի:
— Սա՝ աջ, սա՝ ձախ:
Տատիկս ուրախացավ, որ վերջապես ճիշտ եմ որոշում՝ որն է աջը, որը՝ ձախը: Այնքան լա՜վ... Հաճախ եմ մոտենում տատիս, ձեռքերս հերթով բարձրացնում, նայում նկարներին:
— Տատի՛կ, սա աջ ձեռքս է, սա՝ ձախ: Ճի՞շտ է:
— Ա՛յ, այդպես,— գնծում է նա:— Միանգամայն ճիշտ է:
Երեկոյան հայրիկն ու մայրիկը գործից տուն եկան: Նստեցինք ճաշի: Հայրիկն ինձ ասաց.
— Մուկուչի՛կ, իմ խելո՜ք, գնա՛ ձեռքերդ օճառով լվա ու արի ճաշենք: Դե՜, քեզ տեսնեմ:
Ես շատ եմ սիրում օճառով լվացվել: Լվացվեցի երկար ու մաքուր-մաքուր: Մեկ էլ տեսա ձեռքերիս նկարները չկան: Օճառն ու ջուրը գույնը տարել են: Վա՜յ, վա՜յ, հիմա որն է աջ ձեռքս, որը՝ ձախըս: Չիմացա: Վազեցի ճաշասենյակ:
— Տատի՛կ, տատի՛կ, էս ի՞նչ եղավ, է՜, աջն ու ձախը մոռացա: Վա՜յ...
Ես լաց եղա: Տատիկս գուրգուրեց ինձ:
— Բան չկա՜, Մուկուչի՛կ, մի՜ լաց, մի՜ լաց: Կմեծանաս, անպայման կսովորես:
Լացս կտրեցի, բայց դե, տխուր եմ: Ախըր ե՞րբ պիտի այնքան մեծանամ, որ իմանամ աջ ձեռքս որն է, ձախս՝ որը:

## Լավ անուն դրեք, էլի՜...

Շուշանը վեց տարեկան է: Եթե իրեն ասես փոքր ես, մռութ կանի:
— Չէ՛, մեծ եմ, մեծ եմ:
Հայրը նրան մի ռուբլի տվեց:
— Շուշա՛ն ջան, մեծ աղջիկ ես, գնա խանութից ինձ համար օշարակ բեր: Վաճառող հորաքույրին ասա «Թարխուն» տա, լա՞վ:
Շուշանը փողը վերցրեց, արագ իջավ մեծ շենքի աստիճաններով: Իսկ խանութը հենց իրենց շենքի առաջին հարկում է: Ներս մտավ ու... մոռացավ ասածս անունը: Ետ եկավ արագ, ընկավ ճաշասենյակ:
— Պա՛պ, ա՜յ պապ, ասացիր ի՞նչ պիտի բերեմ: Անունն ի՞նչ էր: Մոռացա:
— «Թարխուն», Շուշա՛ն ջան, «Թարխուն»:
— Հա՜, իմացա: Կհիշեմ...
Շուշանը նորից իջավ ներքև, բայց... դեռ խանութ չէր մտել, տեսավ, որ ասածըս անունը նորից է մոռացել: Մի քիչ կանգնեց, փորձեց հիշել, բայց ասածս անվան տեղ արցունքներ հասան կոկորդին: Չարացած ետ դարձավ, մտավ հոր մոտ, փողը գցեց սեղանին:
— Էդ ի՞նչ անուն ես դրել, է՜, նորից, ա՜յ պապ, մոռացա: Մոռացա...
Լաց եղավ վիրավորված:
— Թող մի լավ անուն դնեն, էլի՜, որ չմոռանամ: Ա՜յ, ասենք՝ Շուշան կամ Տատիկ, կամ Պապա:
Հայրը երկար չարչարվեց, մինչև հանգստացրեց նրան:

## Ճաշակով մուկը

Էս պատմությունը որ լսեք, չզարմանաք: Արևս վկա, եղած բան է: Թե ուզում եք, մի յոթ-ութ մարդ վկա բերեմ, նաև իրեղեն ապացույց ունեմ:
Երևանում ինձ հյուր կանչեցին մի տուն: Լավ սեղան էր գցած՝ պոմիդոր, խնձոր, քաղցրավենիք, շոկոլադներ, երշիկ, նաև շշերով խմիչք: Մենք մի յոթ-ութ հոգի էինք՝ կողք-կողքի նստած: Տանտերը լուսանկարել գիտեր: Նա մեզ՝ իր հյուրերին նկարեց այնպես, ինչպես նստած էինք: Գունավոր լուսանկար էր, բավականին

հաստ թղթի վրա: Երբ դա գործիքից հանում են, մի քանի վայրկյան սև է մնում, ապա իսկույն մի երեսը պարզվում է բնական գույներով: Ինձ ասացին, թե դա լուսանկարչական նոր գործիք է ու նոր ձև, որ կոչվում է «Պալառոյիդ»: Ի՜նչ ասեմ, նման բան չէի տեսած:

Լուսանկարի մի օրինակը նվիրեցին ինձ: Շատ հաջող, գույնզգույն, բնական նկար էր, ոնց որ նատյուրմորտ, պոմիդորները կարմիր, ինչպես կային, խնձորները՝ մեղրագույն, քաղցրեղենը՝ բուրող: Ես դա դրի կոստյումիս ծոցագրպանում ու... մոռացա:

Մի երկու օր անց ինձ կանչեցին հեռավոր մի գյուղ: Գնացի: Գիշերը մնացի մի ծանոթիս տանը: Առավոտյան ավտոբուս նստեցի, որ գամ քաղաք: Մեկ էլ զգացի, որ կոստյումիս ձախ գրպանի մեջ ինչ-որ բան է խլրտում: Ինձ թվաց, թե՛ բզեզ է: Բայց այդ խլրտոցը օձիքիս տակով ելավ ուսս ու մտավ թևքս: Ես թևքս թափ տվի: Նրա միջից մի փոքրիկ մուկ ընկավ ավտոյի նստարանին և իսկույն թաքնվեց: Ձեռքս տարա ծոցագրպանս: Տեսա այն «Պալառոյիդ» լուսանկարը գրպանումս է: Հանեցի... Հանեցի ու զարմանքից շշմեցի՝ ոչ այն է ծիծաղեմ, ոչ այն է տխրեմ: Եվ ի՜նչ: Մուկը կրծել-կերել է լուսանկարի միջուկը, այսինքն՝ սեղանը, որի վրա պոմիդոր, միրգ, քաղցրավենիք է դրված եղել: Լրիվ կերել է, իսկ մեզ՝ սեղանը շրջապատած մարդկանց, նաև «Ջերմուկ» ջրի և մյուս շշերին բոլորովին ձեռք չի տվել: Ճաշակով մուկ է:

Ա՜յ, այսպիսի զարմանալի բան եղավ:



## Վրիժառու

Պապիկս ջահել ժամանակ որսկան է եղել:

— Հրացանս առնում էի, ընկնում ձոր ու անտառ, որս անում,— հաճախ էր ասում նա:— Կխտար էի բերում, կաքավ, նապաստակ:

Դառնում էր տատիկիս, հարցնում.

— Էդպես չի՞, ա՜յ կնիկ:

— Էդպես է,— հաստատում էր տատիկս:— Է՜, ու՞ր են, է՜, էն օրերը, կռունկ դարձան, գնացի՜ն...

Մի անգամ էր հարցրի.

— Պապի՛կ, բա ինչի՞ հիմա որսի չես գնում: Ծերացե՞լ ես:

— Է՜, ա՜յ բալիկ: Ծերությունը չի, չէ՜,

պատճառը արջն էր: Արջի ձեռ ընկա: Մի տարի արջ բռնող թակարդս տարա, անտառում դրեցի, որ արջ բռնեմ: Լավ պինդ կապեցի ծառից ու եկա տուն:

Մի չորս-հինգ օր հետո ասի գնամ տեսնեմ արջ է ընկե՞լ թակարդը: Գնացի: Որ մոտեցա, զարմացա, թակարդի սողնակը փակվել է, ամա մեջը արջ-մարջ չկա: Էս ի՞նչ բան է, թակարդի վրա կըռացած՝ ինքս ինձ հարցնում էի ես:

Մեկ էլ մեկը ետևիցս ինձ խոտեց: Ասի երևի որսկան ընկերներիցս է: Ամա նայեմ տեսնեմ՝ չէ, արջ է: Դու մի ասի, էս գազանն թակարդս է ընկել, ամա ինչ-ինչ կերպ դուրս է պրծել: Արջ, դու ա՞րջ, դուրս է պրծել, մոտիկ մի տեղ թաքնվել ու սպասել ինձ, որ վրեժը հանի:

Ի՞նչ գլուխ ցավեցնեմ, ա՞յ բալիկս: Լավ տղամարդ էի, ուզածդ ուժը մեջս, արջի հետ կոխ բռնեցի: Բախտս բերել էր, նրա առջևի մի թաթը, որ ընկել էր թակարդը, ջարդվել էր, թե չէ ես կորած էի:

Մի կերպ ազատվեցի արջից ու փախա՝ հրացանս էլ մոռացած, թակարդս էլ, դեռ փափախս էլ կորցրի: Էդ օրվանից թարկը տվի, էլ որսի չգնացի:

Պապիկս նորից դարձավ տատիկիս:

— Էդպես չի՞, ա՞յ կնիկ:

— Էդպես է,— հաստատեց տատիկս:— Մի հիսուն տարի կլինի, որ էդ փորձանքը պատահեց: Է՜, ու՞ր են էն օրերը, կռունկ դարձան գնացին:

Ես ուրախացա, որ պապիկս կարողացել է ազատվել: Նաև սիրեցի այն արջին, ախր արդար վրեժ է հանել: Տեսնես ապրու՞մ է:

## Անպոչ շունը

Գետափին մեծ այգի է: Թթենու շատ խոշոր ծառեր կան, նաև ընկուզենիներ, իսկ նրանցից մի քիչ հեռու խաղողի փարթամ թփեր են:

Մի շուն հզոր հաչոցով վազեց դեպի ինձ: Ես շփոթվեցի՝ ի՞նչ անեմ, հիմա շունը կհասնի, կքոլոլի ինձ: Հանկարծ մի բարակ ձայն տագնապած կանչեց.

— Պազի՜կ, Պազի՜կ, ե՜տ դառ: Պազի՜կ, դրան չկծե՜ս...

Շունը, որ գրեթե հասել էր ինձ, հիկույն պպզեց ետևի ոտքերի վրա:

— Պազի՜կ, Պազի՜կ...

Թթենիների արանքից դեպի ինձ վազեց տաս-տասնմեկ տարեկան մի տղա:

— Է՞յ, դու ո՞վ ես:

— Դե՛, կիմանաս, տղա՛ս,— ասացի ես՝ շունչս մի կերպ ետ բերելով, ախր փրկվել եմ շան ձեռքից:— Իսկ դու, կարծում եմ, այգեպան Լազրի տղան ես:

— Հա՛: Բա որ շունը քեզ կծե՞ր:

— Անունդ Ալբերտ է, չէ՞, տղա՛ս:

— Հա՛,— զվարթացավ տղան,— ի՞նչ իմացար: Դե ե՛կ, ե՛կ: Էլ շունը քեզ վրա չի հաչա: Ինձ լսում է, ենթարկվում: Ե՛կ:

Ինքը խիզախ, ժիր ու խելացի տղա է, գլուխը բաց, մի թեթև շապիկ հագին, ջինսի գոտին լայն:

Սակայն այս ի՞նչ է, շունը ոչ պոչ ունի, որ խոթի ոտքերի արանքը՝ իբրև հնազանդության նշան, ոչ էլ ականջներ, որ խաղացնի՝ տիրոջն անառարկելի հնազանդությամբ հեզությամբ: Նրա ականջները ու պոչն հենց տակից, արմատակըթերից կտրված են: Դրանց տեղում բութ սպիներ էին:

— Ալբե՛րտ,— ասացի տղային,— ես կյանքումս Պազիկ անուն չեմ լսել: Ինչու՞ եք շան անունը Պազիկ դրել, ո՞վ է դրել:

— Ես,— հպարտ պատասխանեց տղան:

— Ինչու՞ հենց Պազիկ: Գոնե Տուզիկ դնեիր, շան նման անուն լսած եմ:

Տղան ծիծաղեց:

— Երկու տարի առաջ էս իմ Պազիկի ականջներն ու պոչը կտրեցին: Ես տանը չեմ եղել, չէ՛, հորս արևը: Պազիկն էլ փոքր է եղել: Դպրոցից եկա տուն, տեսնեմ շունս պառկած վնգստում է, տնքում, հնում՝ արյամբ ողողված: Դու մի ասի սարի գյուղից Պազիկ անունով մի մարդ եկել է մեր տուն՝ գինի առնելու: Վերցրել, թուլան գցել է թարս դրած ճվրանի մեջ, ճյուղերի արանքից շնիկի ականջները քաշել, դանակով կտրել, պոչն էլ կտրել, որ իբր թե շունը պոչով քիթը չծածկի, լավ լսի: Որ տեսա, էնքան լա՜ց եղա... Լաց եղա ու վերցրի շանս անունը Պազիկ դրի:

Ալբերտը հաճույքով ծիծաղեց:

— Դե թող հիմա էդ Պազիկ քեռին գնա վիզը քորի, իրա անունը դրի շանս վրա:

## Տղան զղջացել է

Գարուն էր: Այգուս մեջ փոր էի անում: Մեկ էլ շան լակոտի կլանչոց լսեցի: Տես-

նեմ ձորի կողմի մեր հարևանի տղան, որ տաս-տասնմեկ տարեկան է՝ թուխլիկ ու կլորիկ, վզին թոկ դրած մի շան լակոտ, փոքրիկ մի սևուկ է տանում արահետով: Շնիկն էլ՝ կլանչում, վնգստում, մղկտում, ոտքերը դեմ անում՝ չեմ գա...

— Էդ շնիկը ձե՞րն է,— հարցրի տղային:

— Հա՛, մերն է:

— Ո՞ւր ես տանում:

— Տանում եմ էն ներքևի ձորում քարով տամ, սպանեմ:

— Վա՜յ,— անհանգստացա ես:— Ինչի՞, ա՜յ տղա: Ինչու՞ սպանես:

— Լավ թուլա չի: Համ կովարար է, համ էլ սկի չի հաչում: Հավերի ետևից է ընկնում, բակն իրար խառնում, կեղտոտում: Տանում եմ սպանեմ:

Ես տղային խնդրեցի, որ շնիկն ինձ տա: Նա զարմացած ինձ նայեց ու թոկը դեմ արեց:

— Ա՛ռ տար, քեզ լինի: Ամա փոշմանելու ես, քեռի՛: Պահելու բան չի:

Շնիկի համար ես իմ այգում փոքրիկ բույն շինեցի, բարակ շղթայով նրան կապեցի, սկսեցի կերակրել, շահել-պահել: Անցավ մի յոթ-ութ օր, ցանկապատի ետևից լսեցի տղայի ձայնը.

— Քեռի՛, շնիկս մնու՞մ է:

— Այո՛,— ասացի,— մնում է:

— Կարելի՞ է գամ տեսնեմ:

— Ինչու՞ չէ, արի տե՛ս:

Ես բաց արի ցանկապատի դռնակը: Տղան ներս եկավ, վազեց դեպի բնի առաջ պպզած շնիկը, փաթաթվեց ու սկսեց համբուրել նրան:

— Շնի՜կ ջան, ազի՜զս, ինչ լա՜վ է, որ դու ողջ ես: Ինձ ների՜ր, ների՜ր:

Շնիկն սկսեց լիզել նրա ձեռքերը: Դա մի սրտառուչ պատկեր էր: Ես հուզվեցի անչափ: Տղան գրպանից երշիկի մի խոշոր պատառ հանեց, տվեց շանը:

— Կե՜ր, ազի՜զ ջան, կե՜ր:

Երբ գնում էր, ինձ ասաց.

— Քեռի՛, ինչ լա՜վ արիր, որ փրկեցիր շանս: Կթողնե՞ս, որ ես նրա համար ուտելիք բերեմ, հա՞:

— Բե՛ր, եթե ուզում ես,— ասացի ես:

Ես նրա աչքերում մեղք քավող, ուրախ արցունքներ տեսա:

Հիմա շունս երկու տարեկան կատարյալ գամփռ է: Տղան հաճախ է այցելում նրան՝ միշտ նրա համար ուտելիք բերելով...



**ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**

# ՖՐԻԿ

## Ճակատագիրը՝ ծուռ դատավոր

Նարեկացուց հետո՝ 13-րդ դարում, ասպարեզում երևում է մի ուրիշ դժգոհ, որը վիճում է արդեն ճակատագրի հետ: Նա էլ, իհարկե, հավատացյալ է, և նրա բոլոր երգերը ավարտվում են աստծուն ուղղված խոսքերով կամ աստծու փառաբանությամբ, նա և ժամանակի ոգուն համապատասխան, գրում է հոգևոր երգեր: Բայց նրա հայացքն ուղղված է ոչ թե աստծուն, այլ գամված է հողին, մըտահոգված իրական մարդով ու նրա ճակատագրով: Նա ըմբոստանում է երկրային անարդարության դեմ:

**Է՜յ, չա՜րխ, ըզվատին տունըն կու ծեփես ոսկով դու բոլոր,**
**Զաղէկն ի յերկիր ի վար վըտարես, որ ծովէ կըտոր,**
**Զայն, որ խոզարած չ՛ վայլէ, կու զուգես ահեղ ձիաւոր,**
**Եւ ըզղորդ մարդկաց զտունըն կու քակես առանց բահաւոր:**

(Չարխ— անիվ, ճակատագրի անիվ, բախտ: Է՜յ, բա՜խտ, վատ մարդու տունը չորս կողմից ծեփում ես ոսկով, լավին ներքև ես գլորում, ստիպում ողորմություն հավաքել: Այն մարդուն, որ արժանի չէ անգամ խոզարած լինել, զուգում ես իբրև ահեղ ձիավոր և ճշմարիտ մարդկանց տունը ավերում ես առանց բահավորների):

Այս բանաստեղծությունը ձեռագրերում վերնագրված է «Ընդդեմ փալաքին և վասն բախտի» («Ընդդեմ ճակատագրի և բախտի մասին»): Աշխարհի կարգերի անարդարությունը խորապես խոցում է բանաստեղծին: Անարժանները օգտվում են բոլոր բարիքներից, իսկ արժանավորները՝ տանջվում աղքատության ու անհայտության մեջ.

**Զանգէտ ու զնաքաս մարդըն յաստնորս առնես ձեռնաւոր,**
**Զիմաստուն մարդկանց ըզհացն կու ձըգես ի սար կամ ի ձոր:**

(Անգետ ու վատ մարդուն տալիս ես զորություն, իսկ իմաստուն մարդկանց, հացը սար ու ձոր ես գցում): Ֆրիկն ընդվըզելով ճակատագրի դեմ՝ այն անվանում է «ծուռ դատավոր».

**Է՞ր չես դու առնէր ուղորդ դատաստան,**
**Է՜ ծուռ դատաւոր,**
**Փալաքդ ես ծռին ընկեր ու՛ ըղորդին ես խիստ նենգաւոր...**

(Ինչու՞ ճշմարիտ դատաստան չես անում, է՜յ, ծուռ դատավոր, դու վատին ընկեր ես դառնում, իսկ իսկական մարդու նկատմամբ խիստ նենգավոր ես):

Այսպես է գրում Ֆրիկը՝ 13-րդ դարի բանաստեղծ, մի շատ ինքնատիպ, խոշոր անհատականություն, որից սկիզբ է առնում աշխարհի անարդար կարգերի դեմ բողոքի բանաստեղծական ավանդույթը հայ պոեզիայում: Ավետիք Իսահակյանը ժամանակով ու աշխարհըմբռնումով շատ հեռու է Ֆրիկից, բայց երբ նա գրում է՝ «Խեղճ աղքատը դառը դատի, դատարկ նստի, հեյ աշխարհ», հիշում ես Ֆրիկին: Ֆրիկի խորին անբավարարվածությունը աշխարհից զգացվում է նրա բոլոր երգերում: Նա շատ է խոսում մարդու անցավորության, նրա վաղանցուկ կյանքի մասին, կոչ է անում մարդուն ավելի շատ մտածել հավերժական (այսինքն՝ հանդերձյալ) կյանքի մասին, հոգին մաքրել մեղքերից և այլն: Ամբողջ միջնադարը սրանով էր մտահոգված: Բայց Ֆրիկի տաղերում մարդու ֆիզիկական մահն է ամենաողբերգականը: Ֆրիկը ընդվզում է ճակատագրի դեմ, որն անարդար է մարդու նկատմամբ այս կյանքում: Հանդերձյալ կյանքի հեռանկարը չի մխիթարում բանաստեղծին, և նրա սպասելիքները այս աշխարհի հետ են կապված:

Նա խոսում է իրական մարդ-անհատի մասին: Նրա բանաստեղծություններն են նրա կենսագրության մասին գաղափար տալիս, կենսագրական ուրիշ աղբյուրներ նրա մասին գրեթե չկան: Սա իր ժամանակի բանաստեղծության համար մեծագույն նորություն էր: Նարեկացու պոեմը ուժեղ է իր տիեզերական ընդգրկումներով: Իսկ Ֆրիկի խոսքը որոշակի անհատական կենսագրություն ունեցող մարդու մասին է.

**Չի գիտեմ թ՛ որ մեռանիմ, ոչ ոք ունիմ որ թաղէ զիս,**
**Ոչ ունիմ տեղ հանգըստեան, ոչ խընդացել եմ յիմ որդիս:**
**Ոչ եղբայր ու՛ ոչ զոք ունիմ, որ ալաղէ,**

**ափսոսայ զիս,**
**Ոչ ծլիմ, ոչ բուսանիմ, զերդ զաղընձած**
**սերմ եմ գերիս:**

(Որովհետև գիտեմ, որ երբ մեռնեմ, թաղող չեմ ունենա, ո՛չ հանգստյան տեղ ունեմ, ո՛չ էլ որդովս եմ ուրախացել, ո՛չ եղբայր ունեմ, ո՛չ էլ մեկ ուրիշը, որ ողբա, ափսոսա ինձ, ո՛չ ծլում եմ, ո՛չ աճում, եւ՝ գերիս, նման եմ բոված սերմի): Մեր առաջ կանգնում է կոնկրետ անհատ իր ողբերգական ճակատագրով: Հերոսը միայնակ, բնավեր մարդ է, որը չունի ընտանիք, զավակներ, եղբայր և ուրիշ հարազատներ: «Ո՛չ ծըլիմ, ո՛չ բուսանիմ, զերդ զաղընձած սերմ եմ գերիս»,— սա հայ բանաստեղծության մեջ մարդկային ողբերգության ամենաուժեղ արտահայտություններից մեկն է:

Ֆրիկն ապրել է թաթարական ասպատակությունների տարիներին, և նրա դառնացածության ակունքներից մեկն էլ հենց այդ է:

**Հիմիկ դըժարեց բաներս, որ թաթարն**
**եղաւ թագւոր,**
**Ջըրկեց զամենայն աշխարհս ու գողերն**
**էդիր մեծւոր:**

(Հիմի մեր գործը դժվարացավ, որ թաթարը եղավ թագավոր, թալանեց ամբողջ աշխարհը ու գողերին դարձրեց մեծավոր): Բռնության ու բռնատիրության ամենադիպուկ գնահատականներից են այս տողերը. բռնությունը հենվում է գողերի վրա: Մեր ժողովրդի պատմության այդ ծանր շրջանը այսպես իր ուղղակի արձագանքն է գտնում Ֆրիկի բանաստեղծության մեջ: Բայց Ֆրիկը արդեն լավ գիտեր, որ այդպես չէր մնալու, թաթարներն էլ պետք է կործանվեին.

**Այս այլ չի մնայ հանցեղ ու փալաքն**
**ոչում կարնոր.**
**Զարնու եւ ձըգէ ի վայր՝ չ'համարէ զոչ**
**ոք թագւոր:**

(Այս էլ այսպես չի մնա, փալաքը ոչ ոքի չի սատարում, կխփի և վայր կգցի, ոչ ոքի թագավոր չի համարում):

Այս բոլորից հետո Ֆրիկը հիշում է աստծուն. ճակատագիրը նրան բացատրում է, որ ինքը աստծու կամքն է կատարում, և այստեղից արդեն սկսվում են ծանոթ մոտիվները՝ համակերպում աստծու կամքին, խորհրդածություններ մարդու մեղավորության մասին և այլն: Բայց, դրան հակառակ, բանաստեղծության վրա թևածում է բանաստեղծի բողոքը աշխարհի անարդարության դեմ:

## ՊԻՈՆԵՐ—ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

— Ի՞նչ է անունդ:

Փոքրիկը, որ նոր էր արթնացել ցերեկային քնից, տրորեց աչքերը ու նայեց հարց տվողին:

— Նունե,— պատասխանեց փոքրիկը:

— Նունե, գիտե՞ս, որ իմ տեղում ես քընել,— նստելով նրա կողքին, ասաց Ծողիկը:

Փոքրիկը զարմացած նրան նայեց:

Հետո Ծողիկը Նունեին բացատրեց, որ ինքն էլ է եղել այդ մանկապարտեզի սանը: Հենց Նունեի մահճակալի տեղում ժամանակին դրված է եղել իր մահճակալը:

Քունը գլխին էր, դրա համար երևի Նունեն չհասկացավ:

Հենց այդ պահին նրանց մոտեցավ դաստիարակչուհի ընկեր Սիլվան: Նա ճանաչեց իր նախկին սանին:

Ծողիկի հետ այդ օրը մանկապարտեզ էին գնացել նաև նրա համադասարանցիներ Արամը, Արմինեն, Գայանեն ու Մարինեն:

Դաստիարակչուհու հետ նրանք ներկայացան մանկապարտեզի վարիչ Մարո Քալաշյանին:

— Մեր դասարանը,— ասաց ջոկատի խորհրդի նախագահ Արամը,— որոշել է վերցնել մանկապարտեզի փոքրիկների շեֆությունը:

Այդպես սկսվեց Երևանի № 105 միջնակարգ դպրոցի Գ. Հակոբյանի անվան ջոկատի և Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի № 4 մանկապարտեզի սաների բարեկամությունը:

Հիմա նրանք հաճախ են հանդիպում: Պիոներները օգնում են փոքրիկներին նախապատրաստվելու «Մաքրության և առողջության տոնին», ծրագիրը մշակում են միասին: Սովորեցնում են բանաստեղծություններ արտասանել, երգել:

Տղաները փոքրիկների ջարդված խաղալիքներն են նորոգում:

Մանկապարտեզի փոքրիկներին պիոներները մի քանի անգամ դպրոց են տարել, ցույց տվել պիոներական սենյակի «Աստղիկ» ակումբին նվիրված անկյունը, մասնակից դարձրել «Այբբենարանի» և «Մենք Լենին պապիկի թոռնիկներն ենք» հանդեսներին:

Այդպես օր-օրի պիոներները մանկապարտեզի սաներին նախապատրաստում են դպրոցի համար:

ԾԱՎԱՐԾ ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

# Փոքրիկ Մանեն

Խոտերի մեջ դեռևս թաց ու շողշողուն
Փոքրիկ Մանեն շատ-շատ խաղաց, հոգնեց մի քիչ.
Բայց տես, գտավ առավոտը՝ տեսքով ցողի,
Առավ ափին ու զարմացավ այդ հրաշքից։

Ծաղիկներում, ինքն էլ՝ ծաղիկ, Մանեն խաղաց,
Նա ծիծաղեց՝ զնգուն զանգակ ու տե՜ս, մի տե՜ս.
Թե ինչ գտավ.
Շուշաններին, հիրիկներին, թե ինչ ասաց.
— Ինձ ժպտում եք դուք ճիշտ և ճիշտ մայրիկի պես։

Արևն օրոր ու շորորուն գնաց քնի,
Եվ երկնքում առկայծումներ են մերթ ընդ մերթ,
Իսկ մեր Մանեն տես գտավ ի՜նչ, հորինեց ի՜նչ.
— Աստղիկները զրուցել են ուզում ինձ հետ։

... Փոքրիկ Մանեն ինչեր գտավ այդ մեկ օրը,
Նա նուրբ ժպտաց, անուշ ժպտաց երազի մեջ,
Նրան թվաց՝ գուրգուրեցին.
Թվաց օրոր՝
Ծաղիկները, աստղիկներն են ասում անվերջ։



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՎԱՀԱՆ ԹԱՄԱՐՅԱՆ

# Ներում

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Հայրիիի՜կ,— հողոտ քիթուբերանը ցետնից կտրելով՝ կանչում է Հայկը:

Մայրը թիկունքը նրան դարձրած, դեմքը՝ ուղղաձիգ ճանապարհի վրա հետզհետե փոքրացող ամուսնուն, գլուխն է տարուբերում, և նրա այդ շարժումի մեջ այնքա՜ն տրտմություն կա: Հայկի աչքերից գլորվող արցունքները շուրթերին չհասած՝ ցած են ընկնում ու վերնաշապիկի տակ անհետանում:

Ավելի հեռվում ճանապարհի ոլորանն է, և տղամարդը թիկունքը կծկելով քայլում է ու քայլում: Իբր ոչինչ չի ուզում մտածել և ուրախ է: Քամու անտարբեր սլացքի միջից ճիգով գլուխ են բարձրացնում անցյալը, ներկան, անդարձը, վերադարձը, և ոլորանը ընդառաջ է գնում տղամարդուն, նրա ոտնաձայները կուլ են գնում տարածությանը, խըրճըվում բազմաթիվ ուրիշ արձագանքների մեջ, մաշվում, վերանում:

— Հայրիիի՜կ,— Հայկը երկար նայում է, փռված ճանապարհին, ոլորանին, որ երևի ո՛չ հիշողություն ունեն, ո՛չ էլ կարող են ցավել կամ ծիծաղել:

Անհա չքացան հոր ծնկները, հայրը չքացավ մինչև գոտկատեղը: Կոր գծի վրա միայն ուսերն են ու տատանվող մի գլուխ: Ոլորանի եզրին ծա՞ռ է, քա՞ր, թե՞ հոր գլուխն է շարժվում, գուցե անշարժ է: Ինչ էր, ինչ չէր, ինչպես կար, այնպես էլ կորա՞վ, թե՞ տարան:

— Հայրիիի՜կ...

Հայկի ձայնը հասնելով ոլորանն անցած հոր թիկունքին, սուսուփուս փշրվում է, մի-գուցե չի փշրվում, այլ ծանր-ծանր կախվում է հոր ուսերից:

Հայկի մոր ուսերը ձնեմարդու ուսերի պես կլորացան, մեջքը ձնեմարդու մեջքի պես կըլորացավ, իսկ քամին խաղում էր նրա ծոծրակին իջած խոպոպների հետ, օրորում ոլորանը զարդարող ծառը, ինքն իրեն: Անհա պարզ երևում է քամու օրորվելը:

Հայկը մատով գծեր է քաշում արցունքներից խոնավացած հողի վրա: Գծերը նման էին ճանապարհների, որոնք ամենատարբեր կողմերից դեպի իրեն հոսող առվակների պես մի տեղ հավաքվելով, խեղդամահ էին անում վերադարձի անհայտ-անտես գիծը...

Տղան բռունցքը թափահարեց արագություն վերցնող ավտոբուսի ետևից և ինքն էլ վազքն արագացրեց:

— Մի րոպե սպասեիք, թող նստեր, ուշ ժամ է, մեղք է,— ասաց ավտոբուսում նըստած կանանցից մեկը, դժգոհությամբ նայելով վարորդին, որի դեմքը հայելու միջից էր երևում:

— Երեխա՞ է,— հեգնեց վարորդը,— իսկ երեխան այս ժամին դրսում ի՞նչ է շինում:

— Վերջը,— չհանգստացավ նույն կինը,— դրսում չպիտի մնա: Փորձեք մի րոպե պատկերացնել, որ հիմա ձեր երեխան էլ է դըրսում...

— Պատկերացնելու կարիք չունեմ,— չորությամբ ընդհատեց նրան վարորդը:

Իսկ ավտոբուսը, այնուամենայնիվ, կանգ առավ:

Տղան օրորվելով և հևալով բարձրացավ, նայեց նստածներին, հետո մոտեցավ մի կընոջ, կանգնեց գլխավերևում, երկար-բարակ զննեց:

— Ըհը՜մ,— մաքրեց կոկորդը:— Բարև՛ ձեզ,— ողջունեց ծաղրածուի պես գլուխ տալով:

Կինը խիստ հայացքով խեթեց նրան ու շրջեց դեմքը:

— Փի՜ս, փի՜ս, փի՜ս,— դպրոցական համազգեստով մի աղջկա կողքին կանգնեց տըղան,— փիսո՜, փիսո՜, փիսո՜,— փաղաքշանքով ձայնեց նա և շոյում էր աղջկա հյուսքը,— մյաուուու՜,— մլավեց տղան:

Աղջիկը սրտնեղած, պաշտպան գտնելու հույսով շուրջը նայեց, բայց որովհետև մի քանիսը ծիծաղում էին, և դեռ կային բարեհոգաբար ժպտացողներ, ինքն էլ սկսեց ծիծաղել:

Սակայն ընդհանուր հրճվանքը երկար չըտևեց, քանի որ ավտոբուսում կար մի խոժոռ քեռի, որն էլ տղայի բերանից գինու հոտ առավ և անմիջապես էլ հայտարարեց.

— Այս փոքրիկ թափառաշրջիկը գինի է խմել:

— Ծնողներ չունի՞, անտեր-անտիրական՞ն է,— քրթմնջաց կանանցի մի ձայն:

— Վա՜յ, տղա՜, տղա՜, արդեն խմե՞լ էլ գիտի,— առանց շրջվելու ասաց վարորդը այնպիսի տոնով, որ ոչ ոք չհասկացավ՝ ծըղըտու՞մ էր, թե՞ մռայլ էր:

Հետո, մի քանի կանգառ շարունակ նըստողների բռնակներից կառչելով, տղան ետ ու առաջ էր քայլում նեղլիկ անցումով: Երբեմն խոնարհ գլուխ էր տալիս սրան-նրան: Իջնողները, բարձրացողները և նստածներից շատերը ծիծաղում, քրթմնջում, ափսոսանք հայտնում, հոգոց էին հանում ու նախատում տղայի անհայտ ծնողներին:



Իսկ տղան տեղ էր գտել ավտոբուսի ետնամասում, գլուխը հենել նստոցի թիկնակին և դուրեկան, ոչ այն է աշխույժ, ոչ այն է չարությամբ երգում էր սուսկ իրեն հայտնի մի երգ:

**Կոտրենք կառքը, կոտրենք կառքը,**
**Գնդերը հանենք, գնդերը հանենք,**
**Տանեեե՜նք...**
**Սպանենք ձիուն, սպանենք ձիուն,**
**Պայտերը հանենք, պայտերը հանենք,**
**Տանեեեե՜նք...**
**Պայտերը հանենք, պայտերը հանենք,**
**Մեր դռան վերև, մեր դռան վերև**
**Կախեեեե՜նք...**

— Որ կամ երջանիկ լինենք կամ հենց այնպես,— եզրափակեց նա իր երգը:

Հետո տեղափոխվելով ավելի հարմար մի տեղ, նույն երգը երգեց արտասվելով.

— Որ կամ հայր ունենանք կամ ոչ մի բան:

Թևերը ծալելով դիմացի նստոցի բռնակի վրա՝ նա ցած իջեցրեց գռուզ մազերով գլուխն ու համրացավ:

Ավտոբուսում լռության, հոգոցների համար նեղվածք էր: Միայն ավտոբուսն էր, որ դղրդղրում էր միալար, միայն վարորդն էր, որ կարճ ընդհատումներով ոչ այն է ազդանշան էր տալիս, ոչ այն է իր զայրույթն արտահայտում վզզալով անցուդարձող մեքենաների՞, թե՞ ուրիշ ինչ-որ բանի հանդեպ:

— Հետո՞:

— Վե՞րջը:

Հետո ոչինչ էլ չեղավ: Պարզապես ինչպես մնացած բոլոր ծառերը, այնպես էլ ոլորանի ծառը գարնանը կանաչում էր, աշնանը դեղնում, ձմռանը քամիների ու խիստ ցրտի մեջ կանգնում, չոր ու ցամաք ճյուղերը վեր պարզած կամ ըստ քամու քմահաճույքի թեքում աջ, ձախ, ցած: Բազմաթիվ մեքենաներ ու մարդիկ էին անցնում ուղղաձիգ ճանապարհով, ոլորանի հետ թեքվում, հետո հասնում տուն: Տուն մտնող մարդիկ խաղում էին իրենց երեխաների հետ, հաց էին ուտում, հետո հեռուստացույցի դիմաց նստած, հորանջելով ունկնդրում խոհանոցում լվացվող ամանների չխկչխկոցը, մինչև կանայք գալիս ու բոթում էին կողքերը թե՝ քնով ընկար, երեխաներին դաս սովորեցնելու ժամն անցնում է:

Հետո մի բան պատահեց, որ... այսինքն՝ առանձնապես ոչինչ էլ չպատահեց, երեխա Հայկի վերնաշրթի աղվամազերը մգացան և վաղը, մյուս օրը նա մոր տված փողով խանութից սափրվելու պարագաներ պիտի գներ, տանը հայելու դիմաց նստած՝ պիտի օճառեր դեմքը, և մայրը՝ թևերը կրծքին խաչած, գո-

րովանքով, հույսով, արցունքները սրբելով կանգնելու էր նրա մոտ։ Այդ օրվանից նա այլևս երեխա չէր լինելու։

Հայկն ու իր մայրը առանց որոշակի պայմանավորվածության ատում էին հատկապես ուղղաձիգ ճանապարհը, հատկապես ոլորանը, իսկ ծառի մասին ոչինչ չէին մտածում, չգիտեին՝ դրա լինե՞լն է լավ, թե՞ չլինելը։ Այս ամենից զատ Հայկն իր համար և մայրը՝ ինքն իր ներսում, հեռուներից, ծիածաններից, հորիզոններից հովի բերած (գուցե նաև անչափ շատ մոտիկից, հենց ոլորանից), հենց տան միջից ելնող ուրախ-զվարթության հույսերն էին զարդարում սարերից ու դաշտերից մտովի քաղած ծաղիկներով, աստղերի ցոլանքներով, արևգալով։ Հայկի հիշողություններից օր-օրի և թել առ թել հեռանում էին հոր դիմագծերը, ձայնը, հայացքը։ Այս նույն բաները մերթ առկայծելով ու մերթ էլ աղոտանալով, ի վերջո մշուշվում էին մոր գիտակցության մեջ։

Տխուր պատմություն ստացվեց, չէ՞։ Ամեն ինչ արեցի, որ ուրախ ստացվեր ու չստացվեց, որովհետև իրական էր։

Ինքն իրենից, իր մենակությունից, անցյալ ու ներկա սխալներից հոգնած, ճշմարտություններից հոգնած (մարդիկ հոգնում են նաև ճշմարտություններից), Հայկին շատ կարոտած, կնոջ հանդեպ ունեցած մեղավորության զգացողությունից ուշքի եկած՝ մտովի ճչաց Հայկի հայրը։ Հետո նա ի մի բերեց այստեղ-այնտեղ ցրիվ եկած իր բարությունը և ճանապարհ ելավ։ Քայլեց անցած ճանապարհով։

Նորից գեղեցիկ օր էր ու արեգակ, կամ էլ ի՞նչ իմանամ, գուցե արեգակ չէր, ու անձրև էր կամ կարկուտ, ի վերջո, բոլոր օրերն էլ գեղեցիկ են, չէ՞։ Արդեն քանի անգամ հասցրել էին կանաչել, դեղնել, չորանալ ու թափվել, հետո նորից բողբոջել ոլորանի և արար աշխարհի բոլոր ծառերը...

Հայրը ոլորանի հետ թեքվեց... թեքվեց ու մի քիչ կանգնեց ծառի մոտ։ Մտովի խնդաց, տխրեց ու իր բոլոր ժամանակների ուրախությունը, ավյունը, տենչը, նաև ուրիշ-ուրիշ մղումներ, որ հար և ընդմիշտ մարդկային են, իր ներսում տեղավորված՝ շարունակեց մոտենալ, մոտենալ...

Հայկը ճանաչե՞ց հորը, ընդառաջ վազե՞ց, ի՞նչ արեց։ Մայրը ուրախացա՞վ, տխրե՞ց, ինչի՞ մասին էր մտածում։

Աշխարհը մեծ է, իսկ մարդկային սիրտն ավելի է մեծ, սերն ավելի է մեծ, վերադարձողներն ավելի շատ են, քան հեռացողները, և ներումը նույնպես մարդկային է։




**Գայլերը աչքի են ընկնում մի շարք զարմանալի հատկություններով։ Ամենազարմանալին ու տարօրինակն այն է, որ զույգերով ապրող գայլերը, որոնք սովորաբար մեծ հոգատարություն են ցուցաբերում իրենց ձագերի նկատմամբ, հեշտությամբ լքում են դրանց, երբ մարդը հայտնաբերում է գայլի որջը։ Հայտնի է, որ նույնիսկ ֆիզիկապես շատ թույլ կենդանիները «մինչև արյան վերջին կաթիլը» պայքարում են իրենց ձագերին փրկելու համար։ Սակայն գայլերը նման դեպքում իսկույն փախուստի են դիմում, մարդու ողորմածությանը թողնելով իրենց ձագերի բախտը։**

**Զարմանալի է նաև գայլերի մի այլ արարմունքը։ Անտառում մոլորված երեխան եթե գայլի է հանդիպում, ապա այդ «վայրագ ու դաժան» կենդանին մեծ մասամբ երեխային ոչ միայն չի հոշոտում, այլև իր որջն է տանում, պահում ու դաստիարակում իր ձագերի հետ։ Այդ տեսակետից Ռեդյարդ Քիփլինգի «Ջունգլիների գիրքը» վեպը հորինվածք չէ։ Այն իրական կյանքից է վերցված։ Քիփլինգը իր վեպի հիմքում դրել է միայն իրական դեպքեր. Հնդկաստանում, գայլերի որջում երեխաներ էին հայտնաբերվել, որոնք «դաստիարակվելով» այդ կենդանիների մոտ, ձեռք էին բերել գայլային հատկություններ՝ չորեքթաթ քայլել ու վազել, ոռնալ գայլի պես, հում միս ուտել, ջուրը խմել գայլի նման լակելով և այլն։ Քիփլինգը իր վեպում իդեալականացնում է գայլերին, սակայն դրա մեջ մեծ է նաև իրականության բաժինը։ Միայն թե գրողը անտեսում է մի շարք հանգամանքներ։ 1894—95 թվականներին, երբ նա գրեց իր «Ջունգլիների գիրքը» և «Ջունգլիների երկրորդ գիրքը» վեպերը, դեռևս հայտնի չէր, որ փոքր հասակում գայլերի որջը ընկած և յոթ տարեկանից հետո մարդկային հասարա-**

կություն վերադարձած մաուգլիները առհավետ կորցնում են խոսելու ունակությունը, քանի որ բանական մարդուն հատուկ հոդաբաշխ խոսքը երեխաների մոտ ձևավորվում է մինչև 7 տարեկան հասակը։ Եթե երեխաները մինչև 7 տարեկանը չեն շփվում մարդկանց հետ, ապա հետագայում խոսել սովորել չեն կարող, քանի որ խոսելու կենտրոնը ետ է զարգանում։ Ռեդյարդ Քիփլինգը չգիտեր այդ մասին։ Եվ զարմանալի չէ, որ նրա վեպի հերոսը՝ Մաուգլին (հետագայում այդպես անվանեցին ընդհանրապես գայլերի որջում ապրած երեխաներին) խոսում է և ձեռք բերում մարդուն բնորոշ հատկանիշները, միաժամանակ պահպանելով նաև գայլային հասարակության մեջ ձեռք բերած սովորությունները։ Սա միանգամայն բնական է. դեպքը և հերոսը վիպականացված են։ Սակայն ճշմարտությունն այն է, որ մաուգլիները ավելի շատ պահպանում են գայլային սովորությունները, քան մարդկային։ Մինչև այժմ գիտությանը հայտնի են 58 մաուգլիներ և բազմաթիվ կապիկների ձագեր, որոնք խնամվել են գայլերի կողմից, «դաստիարակվել» որպես նրանց համայնքի անդամ։ Այդ երեխաների նկատմամբ հատուկ ուսումնասիրություններ են կատարվում, փորձում են նրանց մարդկային հասարակարգ վերադարձնել։

Վերջերս ստացվեց նոր հաղորդագրություն ժամանակակից Մաուգլիի մասին։ «Իզվեստիա» թերթի այս տարվա՝ 1985 թ. մարտի 7-ի համարում (№ 66 (21248), փոքրիկ հաղորդագրություն էր տպագրված այն մասին, որ մոտ 8 տարի առաջ հնդկական Ուտտար-Պրադեշ նահանգի ջունգլիներում, գայլի որջում հայտնաբերվեց մի երեխա։ Ճիշտ այնպես, ինչպես Ռ. Քիփլինգի գրքերում։ Ժամանակակից Մաուգլին միայն հում միս էր ուտում։ Նա քայլում էր չորեքթաթ, ջուրը լակում էր գայլի նման։ Մարդիկ, որոնք հայտնաբերեցին նրան, ապաստան տվեցին և անվանեցին Ռամու, սովորեցրին հագնվել, տաք կերակուր ուտել։ Սակայն, ավաղ, մեզ արդեն հայտնի պատճառով Ռամուն այդպես էլ խոսել չսովորեց։ Պատմելով «գայլաձագի» ճակատագրի մասին, Ռեյտեր գործակալությունը ափսոսանքով հայտնում է, որ վերջերս Ռամուն մահացավ։ Ինչպես պնդում են բժիշկները, երեխան մահացել է թախծից։ Նա անկարող է եղել տանել «գերու» վիճակը և միշտ ձգտել է դեպի ջունգլիները, գայլերի ընկերակցությունը։

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

# Ամռան գիշեր

Գիշերային լռության մեջ
Գլգլում են առուները.
Նրանց ձայնը զեփյուռն առնում.
Թռցնում է հեռուները։

Ծաղիկների բուրմունքն առած՝
Հեռվից կրկին ետ է դառնում
Եվ թփերի սոսափի հետ
Առուների կանչին խառնում։

Գլգլում են առուները.
Եվ թվում է մի պահ այնպես.
Թե նրանց հետ գյուղ են վազում
Աստղ ու գիշեր. ծաղիկ ու սեզ։

# Գորտիկը

Ինձ ասում եք՝ տգեղ ես դու.
Բայց ես դրան չեմ հավատում.
Մո՛րս հարցրեք. և կասի ձեզ.
Թե ի՜նչ սիրուն ձագուկ եմ ես։

Գորտիկն եմ ես.
Գորտիկն եմ ես.
Ո՞վ է. ասեք.
Սիրուն ինձ պես։

Ինձ ասում եք՝ վախկոտ ես դու.
Բայց ես դրան չեմ հավատում.
Մո՛րս հարցրեք. և կասի ձեզ.
Թե ինչ անվախ ձագուկ եմ ես։

Գորտիկն եմ ես.
Գորտիկն եմ ես.
Ո՞վ է սիրուն
Ու քաջ ինձ պես։

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Անգլիական Բրադֆորդ քաղաքում է գտնվում, հավանաբար, աշխարհի միակ ֆերման, որտեղ բազմացնում են... ցեցեր: Մեծ Բրիտանիայի բոլոր տեքստիլ ֆաբրիկաներից այստեղ են բերվում բրդյա գործվածքների նմուշներ, որոնց վրա բաց են թողնում ցեցի թիթեռներին, որպեսզի նրանք ձու դնեն:

Այդպիսով գիտնականները, ինչպես ասում են, «առաջին ձեռքից» իմանում են, թե որ գործվածքներն են ավելի մատչելի վնասատուներին, և այդտեղից հանգում եզրակացության, թե ինչ քիմիկատներով պետք է մշակել տվյալ գործվածքը, որպեսզի այն վնասազերծվի ցեցի թրթուրներից:



Ինչ-որ ժամանակ թեյը նաև փողի դեր էր կատարում Չինաստանում, Մոնղոլիայում, Տիբեթում, Սիբիրում... Այդ փողերը պատրաստում էին հետևյալ կերպ. թեյի տերևները մանր կտրատում էին, խառնում ջրով և ցուլի արյունով, իսկ հետո դարձնում միևնույն չափ ու կշռի մամլած աղյուսներ:

# Հասկացող և չհասկացող ընթերցողների մասին

Մի անգամ մենք այցելեցինք մի մանկական գրադարան և խնդրեցինք մեզ ծանոթացնել ամենաակտիվ ընթերցողների հետ: Մեզ ներկայացրին երկու համակրելի տղաների, որոնց քարտերում տեղ էին գտել ամենաբազմապիսի գրքերի անվանումներ:

«Դու ի՞նչ գիրք հանձնեցիր հենց հիմա»,— հարցրինք նրանցից մեկին: «Անգլուխ ձիավորը»,— պատասխանեց տղան: «Իսկ ո՞վ է գրել այդ վեպը»: Տիրեց լռություն: Հեղինակի անունը տղան չըգիտեր:

Վեցերորդ-յոթերորդ դասարանում դու սկսում ես շատ կարդալ: Բայց, դժբախտաբար, ոչ միշտ ես ուշադրություն դարձնում, թե քեզ դուր եկած գիրքը ով է գրել: Այդ պատճառով էլ գրադարանում չես կարող վերցնել այդ հեղինակի ուրիշ գրքերից: Չես պատկերացնում՝ այդ գրողը քո ժամանակակի՞ցն է, թե՞ ոչ: Եվ, ընդհանրապես, դու կարդում ես առանց սիստեմի և բավական անիմաստ:

Իսկ որպեսզի կարդացածդ իմաստալից լինի, պետք է գիրքը կարդաս առանց բացթողումների:

Գիրքը կարդալուց հետո տետրում պետք է գրես կամ բանավոր ինքդ քեզ պատասխանես՝ «Ինչի՞ մասին կարդացի, ի՞նչ նոր բան իմացա», պետք է գրես գրքի անվանումը և հեղինակի ազգանունը, բոլոր անծանոթ բառերը, որոնց հանդիպում

Տիբեթում և Հնդկաստանին սահմանակից երկրներում այդ «փողն» ուներ մեկ ռուփիի հավասար արժողություն: Հետաքըրքիրն այն է, որ այդ «փողերից» պատրաստված հեղուկը օգտագործում էին բազմաթիվ հիվանդություններ բուժելու համար:

Մյուս կիսագնդում՝ Հյուսիսային Ամերիկայում, որպես փող ծառայում էր ծխախոտը: Վիրջինական ծխախոտի մեկ ֆունտն ուներ երեք շիլինգի հավասար արժողություն, և դրանով կարելի էր գնել խիստ որոշակի քանակության ալյուր, լոբի կամ չիթ...

Թռչունների կյանքը ժամանակակից քաղաքի պայմաններում մեզ զարմանալի օրինակներ է տալիս նրանց հարմարվողականության մասին:

Հայտնի են դեպքեր, թե ինչպես վայրի բադերը ձու են դրել երկաթուղային ճանապարհների հատման կետի մոտ: Թռչնաբաններ գտել են բներ երկաթբետոնե սյուների վրա և նույնիսկ փողոցային կարգավորիչների մեջ: Եվ ահա նոր փաստ:

Բույն լուսաֆորի մեջ: Երթևեկության աղմուկը, բանեցրած գազերը, մեքենաների անդադար հոսքը արգելք չեն հանդիսացել թռչունների համար այնտեղ բույն դնելու, դատելով ամեն ինչից, լույսի կանոնավոր փոխարկումները նրանց բոլորովին չեն խանգարում: Միայն մի բան պարզ չէ, թե ինչու այդ անվրդով փետրավոր զույգը ընտրել է հենց կարմիր գույնը և ոչ թե կանաչը կամ դեղինը: Ասենք, ինչպես հայտնի է, ճաշակին ընկեր չկա...



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



ես կարդալիս, նայիր բառարանում, հանրագիտարանում կամ հարցրու մեծերից: Այլապես, ինչպե՞ս պետք է հարստացնես քո բառապաշարը:

Ավելի հաճախ օգտվիր բառարաններից և ամեն տեսակ տեղեկատուներից: Երբեմն պետք չէ հիշել զանազան փաստեր, որոնք միշտ էլ կարելի է որոնել, գտնել գրքերում: Էյնշտեյնը ասում էր, որ ինքը սկզբունքորեն չի հիշում, թե որքա՞ն է ձայնի արագությունը, քանի որ այն կարելի է վերցնել ցանկացած տեղեկատու գրքից:

Շատ կարդա: Դասագիրքը մեր գիտելիքների կմախքն է: Իսկ միսը՝ գիրքը: Օրինակ, պատմության դասագրքից դու կիմանաս 1812 թ. պատերազմի պատճառները, ճակատամարտերի տարեթվերը և կորուստների քանակը, պատերազմի գլխավոր էտապները և նրա հետևանքները: Իսկ կարդալով Լ. Ն. Տոլստոյի «Պատերազմ և խաղաղություն» վեպը, դու կարող ես պատկերացնել, զգալ այդ պատերազմը, իմանալ, թե ինչպես էին այն ընդունել տարբեր սոցիալական շերտերի մարդիկ, դու կարող ես անցնել այդ պատերազմի միջով վեպի հերոսների հետ միասին:

Գրքերը տալիս են մեզ փաստեր, մանրամասնություններ, այն ամենը, ինչ դասագիրքը ի վիճակի չէ տալու:

## ԺԱՄԱՆՑ



1. Երկիր, որի մայրաքաղաքում տեղի է ունեցել 9-րդ փառատոնը—1, 3, 26, 16, 5, 4, 8, 5:

2. Կոմերիտական, Սովետական Միության հայ հերոս— 5, 23, 12, 24, 8, 19, 2, 5, 11:

3. ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի, որը Բուխարեստում կայացած 4-րդ փառատոնում վոկալիստների մրցույթում արժանացավ ամենաբարձր գնահատականի.— 10, 9, 26, 3, 15, 5, 11, 2, 5, 11:

4. Նեգր, երիտասարդական ազատագրական շարժումների ղեկավար գործիչ— 18, 8, 11, 7:

5. Ջրացատկի վեց համաշխարհային և չորս եվրոպական մրցույթների ռեկորդակիր, ՍՍՀՄ սպորտի վաստակավոր վարպետ, անվանի թեթևատլետ, չորս փառատոների մասնակից.— 1, 4, 3, 14, 12, 26:

6. Բողապեշտյան փառատոնի ոսկե մեդալակիր, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, «Ուսանողական երգ» ստեղծագործության տեքստի հեղինակ— 21, 25, 5, 11, 8, 11:

7. Երիտասարդական ամսագիր— 22, 9, 23, 12, 19, 11, 8, 17:

8. Ջերմանավ, որտեղ ապրում էին Հելսինկիի 8-րդ փառատոնի մեր երկրի պատվիրակները— 7, 4, 3, 6, 8, 5:

9. Հայ անվանի մարզիկ, բուդապեշտյան միջազգային փառատոնի ուսանողական խաղերի հաղթող— 25,5, 20, 8, 11, 2, 5, 11:

Հարցերին ճիշտ պատասխանելուց և տառերը համապատասխան վանդակներում տեղադրելուց հետո կկարդաք դեմոկրատական երիտասարդության հիմնի երկու տողը:

Կազմեց՝
ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆԸ

---

**«ՊԻՈՆԵՐ» № 6-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ**







| | | | |
|---|---|---|---|
| 35 | 55 | 33 | 61 |
| 41 | 53 | 43 | 47 |
| 59 | 31 | 57 | 37 |
| 49 | 45 | 51 | 39 |




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15,
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38,

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



**ԳԵՈՐԳԻ ՅԱԿՈՒԼՈՎ**
**(1884—1928)**
**«ՓՈՂՈՑ» 1909 թ.**

Հանձնված է շարվածքի 23.04. 1985 թ.: Ստորագրված է տպագրության 20. 06. 1985 թ.: ՎՖ 00991: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ. 3,0 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 68400: Պատ. 1064: Գինը՝ 15 կ.:
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 23.04.85 г. Подписано к печати 20.06.85 г. Формат 70×100 1/16. ВФ 00991. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 68400. Заказ 1064. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.




Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.։

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806